

# ՄԵՐ ՁԵՌՔԵՐՈՎ

ՌՈՒԲԵՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Մենք քայլում ենք Երևանյան լայնահուն պողոտաներով, հիանում ձևավոր հրապարակներով, ամառվա շոգ օրերին մեր դեմքն է ցողում առատ ցայտող շատրվանների ջրափոշին, մեզ զով են անում մայթերի երկարությամբ ձգված տերևաշատ ծառերը, հոգնած պահերին մենք նստում ենք մայրաքաղաքի զբոսայգիներում, մեզ օրորում է ծառերի հեքիաթային երգը, մեր աչքը շոյում են կանաչ տարածությունները: Զմայլվում ենք մենք մեր քաղաքը շրջապատող անտառաշերտերով, որոնք վեհորեն բազմած մոտակա բարձունքներում, կարծես եզրափակում են մեր քաղաքի սքանչելի համայնապատկերը:

Քայլում ենք մենք փողոցներով, հիանում հրապարակներով, զովանում շատրվանների ու ջրավազանների մոտ, հանգստավետ շնչում զբոսայգիների ու անտառաշերտերի կենարար օդը, նրանց գրկում վայելում հաճելի անդորրը, և այս ամենը համարում բնական ու անհրաժեշտ:

Ձեզ, պատանի՛ բարեկամներ, իհարկե, չի թվում, որ այս ամենն այսպես էլ եղել է, որ այս ամենը բնությունն է պարգևել մեզ, ինչպես պարգևել է արևի շող ու ջուր, օդ ու աստղազարդ երկինք: Դուք, իհարկե, գիտեք, որ այդ ամենն ստեղծվել է ձեր հայրերի ու մայրերի ստեղծագործ աշխատանքով, անդուլ ջանքերով ու քրտինքով: Դուք գիտեք նաև, որ դրանց ստեղծմանն իր մասնակցությունն ու օգնությունն է բերել պիոներիան, մեր երկրի փառապանծ պատանեկությունը: Ահա այդ մասին է այս զրույցը, որ հյուսված է վաղեմի հու-

ՄԱՅԻՍ
№ 5 1964 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

շերից: Վաղեմի, բայց ոչ շատ հին, որովհետև այդ օրերից անցել է ընդամենը

ԵՐԵՔ ՏԱՍՆԱՄՅԱԿ...

Դուք անշուշտ կզարմանաք, երբ իմանաք, որ ընդամենը երեք տասնյակ տարի առաջ մենք ֆուտբոլ էինք խաղում օպերայի և բալետի թատ-

վում էին «ԱՋՕ» («Արև, ջուր, օդ») և բանկոոպի մանկապարտեզները: Հրապարակը իրենց գիրկն առնող հոյակապ շենքերից այն ժամանակ չկար և ոչ մեկը: Մեծ առաջնորդի արձանի՝ ճարտարապետական այդ հոյակապ կառույցի տեղ դրված էր համեստ մի հուշաքար, որի վրա գրված էր. «Այստեղ բարձրանալու է Վ. Ի. Լենինի արձանը»: Համեստ այդ հուշաքարը միշտ ուզված էր լինում թարմ ծաղկեփնջերի մեջ: Ինչպես այսօր, այն ժամանակ էլ հուշաքարի շուրջը տեղի էին ունենում պիոներական հանդիսավոր տողան-

# ՍՏԵՂԾԵՆՔ ՀԱՐԱՋԱՏ ԱՆԿՅՈՒՆ

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

րոնի հոյակապ շենքի տեղում: Ամայի այդ վայրում դեռ նոր էին սկսվել վիթխարի շենքի կառուցողական աշխատանքները. քլունգով ու բահով փորվում էր հիմքը: Ընդարձակ ու հարթ մի տարածություն էր բացվել, ուր աշխատանքային օրն ավարտելուց հետո շտապում էինք ֆուտբոլ խաղալու: Այժմ ծիծաղելի է թվում, երբ հիշում ենք, որ Լենինյան պողոտայի և Սպանդարյան փողոցի անկյունում կանգնած մոր և մանկան հիվանդանոցի տեղը կիսաքանդ տան մեջ գտնվում էր քաղաքային... գժանոցը: Դժանոցն այստեղ էր տեղավորված, որովհետև դա ծայրամաս էր: Այո, Լենինյան պողոտայի կենտրոնական հատվածը... ծայրամաս: Կիրովի անվան մանկական զբոսայգու տեղը քաղաքային շուկան էր՝ Ղանթարը, կեղտոտ կրպակներով ու չարչու դուքաններով, աներևակայելի հակասանիտարական վիճակով: Իսկ ինչպիսի՞ն էր մեր մայրաքաղաքի սիրտը՝ Լենինի հրապարակը, որը շքերթի, մասսայական հանդեսների ժամանակ ընդունում է տասնյակ հազարավոր մարդկանց, իր հզոր շատրվանով ու գողտրիկ ջրավազանով ամառվա շոգ օրերին զովացնում է շրջապատը, իրեն գամում հարյուրավոր մանուկների ու հասակավորների: Լենինի հրապարակը մանր խանութների ու դուքանների մի լաբիրինթոս էր, Նշանավոր խորովածանոցով ու բաղնիքով: Այստեղ էր գտնվում քաղաքի թերևս միակ դեղատունը՝ մոմլաթե հատակով, իսկ նրա կողքին ձգված էր երկհարկանի մի շենք, ուր տեղավորված էր շատ աղքատիկ հարմարություններով քաղաքային պիոներ տունը: Այն մասը, ուր հիմա ջրավազանն է, գտնը-

ներ: Մենք չէինք պատկերացնում, թե ինչպիսին է լինելու սիրելի առաջնորդի արձանը, բայց գիտեինք, որ բարձրանալու է, գիտեինք, որովհետև տեսնում էինք, թե ինչպես է

ԲԱՐՁՐԱՆՈՒՄ ՆՈՐ ԵՐԵՎԱՆԸ

Բարձրանում է վիթխարի մի թափով, անկասեցնելի տեմպով, բարձրանում է իր տակն առնելով ու ճզմելով գժանոցն ու Ղանթարը, օձագալար փողոցներն ու գետնափոր ցեխածեփ տները: Թզուկ, միհարկանի քաղաքի տարբեր մասերից խոյանում էին վարդագույն շենքեր: Դժվար էր պատկերացնել, որ այդ հատուկենտ շենքերը, որ ծնվում են կարծես իրարից անկախ ու միմյանց հետ չունեն ոչ մի կապ, քաղաքի գլխավոր ճարտարապետ, հանճարեղ Թամանյանի երևակայության հանդուգն թռիչքով ձուլվելու են իրար, կանգնելու են մի շարքի, դառնալու լայնահուն պողոտա, ընդարձակ հրապարակ, աչք շոյող կանաչ տարածություններ: Նոր Երևանը բարձրանում էր արագ, բայց այդ արագությունը չէր բավարարում Երևանցի աշխատավորին: Անկախ իր զբաղմունքի տեսակից, լինի նա մտավորական թե արտադրության բանվոր, արվեստագետ թե ուսանող, ուզում էր մասնակցել Նոր Երևանի ստեղծման գործին, ուզում էր անպատճառ ունենալ իր ներդրումը: Երևանի կառուցումը դարձել էր համաժողովրդական գործ: Շաբաթօրյակնե՜ր, շաբաթօրյակնե՜ր: Շաբաթօրյակներ, բարձր, տոնական խանդավառությամբ լեցուն շաբաթօրյակներ, որ հրավիրում էին առավոտյան ժամը 8-ին, սակայն մասնակիցները հավաքվում

էին երկու ժամ շուտ: Մարդիկ շաբաթօրյակ էին գնում փողային նվագախմբով ու երգերով և տուն էին վերադառնում. երբ երկնքում հանգչում էին մայրամուտի բոցավառ շողերը: Տուն էին դառնում հոգնած բայց հոգեկան անհուն մի բավականությամբ. մեծ մի գոհունակությամբ, որ կատարել են հանրօգուտ ու հայրենասիրական գործ:

Մեր սերունդը. պատանի՛ բարեկամ. քո տարիքին էր: Բարի մի նախանձով էինք մենք նայում մեր հայրերին ու մայրերին, ավագ եղբայրներին ու քույրերին: Մեզ թվում էր, որ նրանք ամեն գործ կավարտեն ու մեզ ոչինչ չի մնա անելու: Մենք երազում էինք այդ մեծ գործի մեջ ունենալ

ՄԵՐ ՀԱՄԵՍՏ ՆԵՐԴՐՈՒՄԸ

Մենք սովորում էինք Երևանի Ծահումյանի անվան միջնակարգ դպրոցում: Ես շեշտում եմ միջնակարգ. որովհետև միջնակարգ դպրոցներ այն ժամանակ քիչ կային: Դպրոցի շենքը երկհարկանի էր: Աշակերտության թիվը խիստ մեծացել էր և երրորդ հարկի կառուցումը դարձել էր անհրաժեշտություն: Եվ ահա կառուցվում էր երրորդ հարկը: Բարձր դասարանների աշակերտները ակտիվորեն մասնակցում էին շինարարական աշխատանքներին: Մեզ՝ ցածր դասարանների աշակերտներիս, վիճակված էր միայն դիտել շաբաթօրյակները: Մենք վզներս ծռած. նախանձով նայում էինք շաբաթօրյակների մասնակիցներին: Որքան մեծ եղավ մեր ուրախությունը, երբ աշխատանքային մի օր դպրոցի դիրեկտոր Կ. Ղուկասյանը թույլատրեց մեզ մի-մի քար բարձրացնել կառուցվող հարկը: Անմիջապես շարք կանգնեցինք և անհամբեր սպասում էինք հերթի մոտենալուն: Ես չեմ հիշում, թե ինչպիսի խելագար արագությամբ բարձրացրի քարը: Իջնելուց հետո մեզնից ոչ մեկը չէր մաքրում շորերի փոշին. ուզում էինք. որ այդ փոշին մշտապես մնա մեր ձեռքերի ու շորերի վրա՝ որպես համոզիչ մի ապացույց մեր կատարած աշխատանքի: Այդպես փոշոտ էլ մենք տուն էինք դառնում. երջանիկ ու գոհ: Այդ դեպքը մեզ գլխի գցեց, թե ինչպես կարելի է մասնակցել քաղաքում ծավալված կառուցողական վիթխարի աշխատանքներին: Գրեթե ամեն օր դասերից հետո, մենք մոտենում էինք ճանապարհի մոտ կառուցվող շենքերին և աշխղեկին խնդրում թույլ տալ մի-մի քար բարձրացնել: Այսպես. եթե կարելի է ասել՝ պարտիզանական ձևով, մենք սկսեցինք մասնակցել քաղաքաշինարարությանը:

Մենք արդեն միջին դասարաններում էինք:

Բարձրանում էր օպերայի և բալետի շենքը: Մեր դպրոցի պատուհաններից այն լավ էր երևում. և մենք գիտեինք, թե յուրաքանչյուր օր քանի քարով է բարձրացել շենքը: Այդ քարերից շատերը մեր բարձրացրածներից էին: Բայց քար բարձրացնելը մեզ արդեն չէր բավարարում. մենք ուզում էինք ավելի լուրջ աշխատանք:

Մի օր. երբ արդեն բարձրացրել էինք մեզ «հասանելիք նորմա քարերը». խոսեցինք աշխղեկի հետ: Նա խոստացավ մտածել: Շատ չանցած. մենք ստացանք մեր առաջին «պաշտոնական պարտականությունը»:

— Այս շենքը լինելու է ժողովրդական տուն,— բացատրում էր մեզ աշխղեկը:— Այստեղ կայանալու են համաժողովրդական ցուցադրումներ. ներկայացումներ: Պե՞տք է, որ մասնակիցները ունենան նաև զբոսավայր: Մենք ձեզ հետ կստեղծենք այդ զբոսավայրը:

Մեր ոգևորությունն անսահման էր: Անմիջապես գործի անցանք: Առաջին հերթին պետք էր տեղանքը մաքրել քարերից: Այդ գործը մենք արեցինք երկու-երեք օրում: Հետո նույնքան կարճ ժամանակամիջոցում, նշանակված տեղերում փոսեր փորեցինք և անհամբեր սպասում էինք տնկիներին: Վերջապես տնկիներն ստացվեցին: Օրը երկու անգամ ջրում էինք նորատունկ ծառերը: Մի օր աշխղեկը մեզ բաժանեց թիթեղյա կտրոններ: Այդ կտրոնները մետաղյա լարով մենք կապեցինք ծառերին. կտրոնների վրա գրված էր՝

«ԱՅՍ ԾԱՌԸ ՏՆԿԵԼ ԵՎ ԽՆԱՄԵԼ Է...»

Այնուհետև՝ խնամողի անունն ու ազգանունը: Մենք հպարտությամբ էինք կատարում ծառը խնամելու մեր պարտականությունները: Մեր աչքերի առաջ. մեր ջանքերի համեստ ներդրումով աճում էին ծառերը. աճում էր զբոսայգին:

... Հայաստանում սովետական կարգերի հաստատման 15-րդ տարեդարձն էր: Նախապատրաստվում էր հոբելյանական շքեղ տոնակատարություն: Նախապատրաստվում էր նաև պիոներական կազմակերպությունը, մեր ջոկատը նույնպես: Տոնական մեր հավաքույթը նվիրված էր Մայիսյան ապստամբության հերոսներին: Հավաքույթն անցավ մեծ հաջողությամբ: Մեր ջոկատին շնորհվեց Մայիսյան ապստամբության հերոս, Հայաստանի «Սպարտակ» կոմունիստական երիտասարդական կազմակերպության հիմնադիր Ղուկաս Ղուկասյանի անունը և իրավունք տրվեց մասնակցել տոնական շքերթին:



Լենինի հրապարակն այն ժամանակ դեռ կառուցված չէր: Ծքերթը կայանալու էր Կիրովի անվան մանկական զբոսայգու տեղում: Դանթարն այլևս չկար, բացվել էր ընդարձակ մի տարածություն: Այստեղ էլ փայտից պատրաստվել էր ամբիոն, որի առջևից անցնելու էին ցուցարարները: Այդ տարվա տոնակատարությունը նշանավոր էր նրանով, որ Հայաստան էր ժամանել Միության կենտգործկոմի նախագահ (ՍՍՌՄ Գերագույն սովետ) Մ. Ի. Կալինինը: Պատանեկության ու երիտասարդության սիրելի բարեկամը առանձին ջերմությամբ ողջունեց Հայաստանի պիոներների ներկայացուցիչներին: Մի քանի ամիս անց, գարնանը Ղ. Ղուկասյանի անվան մեր ջոկատը այցելեց Մայիսյան ապստամբության փառապանծ հերոսի հուշարձանը, որը բացվել էր պետական համալսարանի դիմաց: Արձանից քիչ այն կողմ կառուցվել էր աստղադիտարանը: Ուրիշ ոչինչ չկար: Գետինը չոր էր, ամայի: Մեր ջոկատի խորհուրդը որոշեց կանաչապատել հերոսի հուշարձանի շուրջը: Մենք գործի անցանք, մաքրում էինք քարերը, փոսեր փորում: Այդ մասին իմացան Սպանդարյան շրջսովետում, որտեղից հատուկ մարդ եկավ և բացատրեց, որ այդպես անպլան աշխատել չի կարելի, որ շուտով պատրաստ կլինի այգու պլան-հատակագիծը: Շուտով մասնագետի ղեկավարությամբ մենք աշխատանքի անցանք: Մի ամիս հետո արդեն ծառերը տնկված էին և յուրաքանչյուր ծառից կախված էր թիթեղյա կտրոն, հետևյալ մակագրությամբ՝ «Այս ծառը տնկել և աճեցրել է Ղ. Ղուկասյանի անվան ջոկատի պիոներ...» Մեզնից յուրաքանչյուրի անվամբ մի քանի կտրոն կար, որովհետև խնամում էինք մի քանի ծառ:

Ամենից ավելի ուրախալին սակայն այն էր, որ մի երկու տարի անց, մեր ջոկատը, որպես ծառատունկի փորձված կոլեկտիվ, մասնակից դարձավ Քանաքեռի սարալանջի կանաչապատմանը: Հիմա, երբ մենք Հաղթանակի զբոսայգի ենք գնում, խճուղու ձախ մասում խշշում է հսկա ծառերով զովաշունչ մի անտառ: Այն ժամանակ այնտեղ միայն մոլախոտեր կային: Ուժեղ քամիները այնտեղից քաղաք էին բերում ոչ միայն փոշի, այլև ավազ, նույնիսկ քարի մանր հատիկներ: Այնտեղ ծառատնկման ու կանաչապատման աշխատանքներն սկսվելու օրը համաքաղաքային խնջական մի միտինգ էր: Ես հիշում եմ հռետորներից մեկի խոսքերը.

— Այստեղ կլինի քաղաքի թոքածնի շտեմարանը:

Ծառատունկն այստեղ ավելի դժվար էր: Հողը քարքարոտ էր, ամուր: Ավելի դժվար էր ծառերի խնամքը: Ահագին հեռվից ջուրը բերում էինք դույլերով ու ցնցուղներով: Ծավալված էր իսկական մի մրցություն, որ չչորանա ո՛չ մի ծառ, ո՛չ մի թփուտ: Այսօր արդեն, երբ անցել է մոտ 30 տարի,



կարելի է հպարտությամբ ասել, որ կատարված այդ աշխատանքներն իզուր չանցան:

Պատանի՛ բարեկամ, այժմ ես ուզում եմ ձեզ պատմել մանկական երկաթուղու կառուցման մասին էլ:

Մանկական երկաթուղի կառուցելու լուրը անսահման ուրախություն պատճառեց մեզ: Ջոկատի խորհուրդը որոշեց ջանք չխնայել օգնելու կառուցողական աշխատանքներին: Սակայն այդպիսի ջոկատների թիվը հարյուրների էր հասնում: Երկաթուղու շինարարական շտաբում սահմանվեց խիստ գրաֆիկ: Ամեն մի ջոկատ ուներ իր աշխատանքի օրերն ու ժամերը, ինչպես նաև կոնկրետ առաջադրանքը: Թերացող ջոկատները զրկվում էին աշխատանքներին հետագայում մասնակցելու իրավունքից: Աշխատանքներն ամենաբազմապիսի էին: Հիմնականում՝ հողային: Որքան մեծ եղավ մեր ուրախությունը, երբ մանկական երկաթուղու հանդիսավոր բացման օրը առաջին երթուղով զբոսնելու համար իրավունք ստացավ մեր ջոկատի շինարարական աշխատանքների ղեկավար Խաժակ Նիկողոսյանը, որը հետագայում դարձավ մանկական երկաթուղու կայարանապետերից մեկը, իսկ Հայրենական պատերազմում զոհվեց հերոսի մահով:

Այս ամենից հետո, պատանի՛ բարեկամ, ուզում եմ երկու խոսք ասել

ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

Մենք արդեն 10-րդ դասարանում էինք: Ավարտական դասարանում հաճախ է հարկ լինում դասերը կոլեկտիվ կերպով կրկնել: Մենք հավաքվում էինք օպերայի և բալետի թատրոնի այգում, մեր աճեցրած ծառերի ստվերում և պարապում: Մենք հաճախ էինք հիշում, թե ինչպես էինք փորել խաղում այս փոխարի շենքի տեղում: Հիշում էինք նաև ծառատունկի օրերը և համոզվում չէր գալիս, որ այդքան կարճ ժամանակում բարձրացավ շենքը, որ կամարների տակ հնչում էր հանրահռչակ երգչուհու* Հայկանուշ Դանիելյանի զմայլելի ձայնը, որ մեր տնկած ու աճեցրած ծառերն այժմ այդքան ստվերախիտ են, որ նրանք այնքա՜ն պետքական են մարդկանց: Մենք կարդում էինք

մեր ծառերին, հաճախ, շատ հաճախ այցի գնում նրանց: Այցի էինք գնում և՛ կոլեկտիվ, և՛ մենակ: Ու որքա՜ն ծանր էր իմ հոգեվիճակը, որքա՜ն մեծ էր իմ զայրույթը, երբ մի օր տեսա «իմ ծառի» վրա անվան ու ազգանվան սկզբնատառերի անշնորհք մի փորագրություն: Անսիրտ, անպիտանի մեկն է եղել այդ մարդը, հասարակությանը ոչ մի օգուտ չտված մի մարդ, որովհետև բարիք ստեղծած մարդը բարիքը չի փչացնի:

Տասնամյակն ավարտելուց մի շաբաթ հետո սկսվեց Հայրենական մեծ պատերազմը: Մեր դասընկերներից շատերը մեկնեցին ռազմաճակատ, ցրվեցին երկրով մեկ: Միմյանց հետ մենք ունեինք նամակագրական կապ: Այսօրվա նման հիշում եմ մեր դասարանցի, ծառատունկների ակտիվ մասնակից Ալբերտ Աքսկալյանի նամակի տողերը: Պատմելով ռազմաճակատային կյանքից, վերջում Ալբերտը գրում էր. «... Չես կարող պատկերացնել, ինչպես եմ կարոտել Երևանին, մեր հասակակցին, մեր եղբորը, մեր աչքերի առաջ հզորացած քաղաքին: Ինչ ասես կտայի, միայն թեկուզ երկու ժամով լինեի Երևանում, գոնե 10 րոպե անհոգ նստեի իմ ծառերից մեկի ստվերում: Ինչ լա՜վ է, երբ զգում ես, որ հարազատ քաղաքում ունես քո ձեռքերով ստեղծած հարազատ մի անկյուն»:

«Քո ձեռքերով ստեղծած հարազատ անկյուն»— լավ է ասված:

Դու կրկին չտեսար քո ստեղծած հարազատ անկյունը, սիրելի՛ Ալբերտ, դու կյանքդ տվեցիր միլիոնավոր այդպիսի անկյուններ ֆաշիզմի ավերումից փրկելու համար:

Հիշելով պատերազմում զոհված ընկերոջս խոսքերը՝ ընդհանրապես մտածում եմ. «Իմ պատանի բարեկամներից արդյոք բոլո՞րն ունեն իրենց ձեռքերով ստեղծած հարազատ անկյուն»: Ի՞նչ են մտածում նրանք, ովքեր չունեն: Կարող եմ միայն մի խորհուրդ տալ՝ ուշ չէ, ժամանակ կա, կան նաև գործեր: Ուրեմն, բարեկամնե՛ր, մեր քաղաքում բոլորս, բոլորս «Մեր ձեռքերով ստեղծենք հարազատ անկյուն»:






ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Ո՞ւր է այն ծանոթ
Ճամփան քարքարոտ,
Փոշոտ ճամփի տեղ
Փողոց է շքեղ:
Ովքե՞ր են, արդյոք, այս ճամփան հարթել,
Ցանել գույնզգույն ծաղիկներ, վարդեր,
Ծառեր են տնկել խնամքով, երգով,
Ջրել, մեծացրել մոր գուրգուրանքով:
Ծառերը ճերմակ աչքերն են բացել,
Ողջ շրջապատում բույրը տարածել:
Վարար առուն է վազ տալիս ճիչով
Փողոցի եզրով, ծառերի միջով:
Ժրաջան մեղուն
Ճամփան է շեղում,
Ծաղկաթերթերից
Նեկտար է քաղում:

Այս անուշահոտ, սիրուն ծառուղին
Ծիտիկներին է գերում հմայքով,
Որոնք խումբ կազմած դալար մի ճյուղի,
Համերգ են տալիս անուշիկ երգով:
Փողոցով այս հարթ
Քանի՜-քանի՜ մարդ
Քայլում են, գարնան ջինջ օդը շնչում:
Ծառուղում կանաչ՝
Միշտ երգեր ու կանչ,
Պիոներների ծիծաղն է հնչում:
Այ գովելի գո՞րծ... դե պարզ չէ՞ արդեն՝
Ովքեր են քարոտ այն ճամփան հարթել:

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Գարուն էր, վաղ գարուն, և նա ճանապարհի ծայրին, քաղաքից դուրս, ավտոբուսի էր սպասում։ Երբ եկավ ավտոբուսը, նա ներս մտավ ու տեսավ, որ բոլոր տեղերը զբաղեցված են։ Մի ջահել տղա ոտքի ելավ, տեղ տվեց։

Գարուն էր, վաղ գարուն, ու նա զարմացավ, թե ինչու ավտոբուսում այսպիսի լռություն է։ Երևի ոչ մեկը մյուսին ծանոթ չէ։ Նա որոշեց, որ մարդկանց քիչ բան է պետք ուրախ լինելու համար. ասենք՝ հիշեցում, որ արդեն գարուն է, երկինքը կապույտ է, և կապույտի մեջ արագիլ է ճախրում, իսկ ծառերի ճյուղերի միջև ծխի նման տարածվող ինչ-որ կանաչ երանգ կա, որը շուտով կթանձրանա, կկարծրանա և տերևների ձևով կաղմրկի ծառերի գլխավերևում։ Վաղ գարուն էր, և նա գիտեր, որ դա այն պահն է, երբ լուռ բողբոջում է բնությունը, մարդիկ աշխուժանում են և կյանքը հանկարծ կանաչ աղմուկով ու բողբոջների պայթյուններով է լցվում։

Եվ հենց դրա համար էլ նա որոշեց խախտել այս լռությունը, բոլորովին գարնանը չսազող այս լռությունը, անել այնպես, որ աշխուժով լցվի այս ավտոբուսը, մարդիկ իրար դիպչեն, ինչպես դիպչում են ծառերի ճյուղերը, լցվեն երկնքով ու իրենց ցնծությամբ լցնեն երկինքը։ Դրա համար նա դարձավ իր կողքին նստած փոքրիկ տղային և բարձրաձայն ասաց.

— Դու այնպես ես լռել ու թշիկներդ ուռցրել, որ կարծես, ուր որ է, կպայթես բողբոջի նման։ Այդ ինչո՞ւ ես լռել։

Տղան զարմացավ, նայեց մարդուն, հետո անըսպասելի պայթեց նրա ծիծաղը, և մարդն ասաց.

— Ահա, տեսնո՞ւմ ես, ասում էի, չէ՞. բողբոջի նման կպայթես։

Ետևի ուղևորները նույնպես ծիծաղեցին, և տղան ասաց.

— Իսկ ինչու՞ բողբոջի նման, ես հո բողբոջ չե՞մ, երրորդ դասարանում եմ սովորում։

Դրա վրա վարորդը, որ մինչ այդ լուռ էր, հայելու մեջ նայեց տղային, հետո՝ մարդուն, այդ «տարօրինակ» մարդուն, որ մտավ ավտոբուս ու խախտեց լռությունը։

— Նայի՛ր, —ասաց մարդը, ցույց տալով ճանապարհի կողքով տրտինգ տվող հորթին,— նա էլ է զգում գարնան շունչը, իսկ դու ինչու՞ էիր լռել։

— Ե՞ս,— զարմացավ տղան,— իսկ ո՞ւմ հետ խոսեի, բոլորը լուռ են։

— Մի՞թե,—մարդը դարձավ ավտոբուսի կողմը և տեսավ, թե ինչպես ժպտացին ուղևորները, և նրանցից մեկը, որ իր փոքրիկ աղջկան ծնկանն էր դրել, շշուկով ասաց.

— Ադրինե՛, այս քեռին երևի լռություն չի սիրում։

Նա լսեց երեխայի անունը և, շուռ գալով տեղում, նայեց փոքրիկ աղջկան, որի թիթեռնաձև հանգուցված ժապավենը կարծես նոր բացված ծաղիկ լիներ։

— Ես գիտեմ քո անունը,— ասաց նա, խոսքը երեխային ուղղելով։

— Ի՜նչ մազալուն է քեռին, որտեղի՞ց գիտեք։

— Ա՛յ, քո այդ փոքրիկ քթիկի վրա գրված է։

— Չի՛ գրված։

— Գրվա՛ծ է։

— Չգիտե՛ք։

— Գիտե՛մ։

Ու մարդը ձևացնելով, որ շատ դժվար բան է կարդում, երկար-երկար նայեց երեխայի քթիկին և հանկարծ հայտնագործողի ուրախ բացականչությամբ ասաց.

— Ադրինե՛։

— Վա՜յ, էդ ո՞նց իմացավ,— երեխան զարմացած դարձավ մորը։

— Քթիդ ծայրին կարդացի,— ասաց մարդը։

— Դե որ այդպես է, իմ կողքին նստածի անունը ի՞նչ է։

Նրա կողքին նստած մարդը շրթունքների անձայն շարժումով հուշեց իր անունը, և ուրախ ուղևորն ասաց.

— Քեռի Արամ։

— Վա՜յ, —զարմացավ երեխան։

Այս խաղին հանկարծ սկսեցին մասնակցել բոլորը, որովհետև երեխան շարունակում էր հարցնել.

— Իսկ այս քեռու, իսկ այս մորաքույրի անունը կարո՞ղ եք ասել:

Եվ մարդը անուններ էր հորինում, որ ուրախությամբ ընդունում էին ուղևորները:

Փոքրիկ աղջկան զբաղեցնելու համար բոլորը սկսեցին զարմանալ իրենց անունների իմանալու վրա ու քթները ծածկել:

— Իսկ վարորդի՞նը:

— Նրա քիթը չեմ տեսնում, — ասաց մարդը:

Եվ վարորդը, որպեսզի իր քիթը տեսնեն, ետ նայեց, ու մարդն ասաց. — Քեռի Զավեն:

— Այ քեզ բա՜ն, — զարմացած բացականչեց վարորդը և աչքով արեց փոքրիկին:

Միայն երրորդ դասարանցին շատ մանկական համարեց այս խաղը, ու մի տեսակ, բողբոջի նման նորից փակվեց: Մարդը աչքի տակով նայեց նրա ծնկներին դրված աշակերտական տետրերին, որոնց վրա գրված էր տղայի անունը, ազգանունը ու հայրանունը, և հետո շատ լուրջ տեսքով դարձավ տղայի կողմն ու ասաց.

— Իսկ դու չե՞ս հավատում, որ քթին նայելով կարելի է անունն իմանա՞լ:

— Ես երրորդ դասարանում եմ սովորում, — մի տեսակ լուրջ պատասխանեց տղան:

— Հետո ի՞նչ, ա՛յ ես քո անունը գիտեմ, քթիդ ծայրին գրված է:

Տղան ներողամիտ ժպտաց:

— Անունդ Հովհաննես է:

Տղան մի պահ զարմացավ, բայց հիշեց, որ երրորդ դասարանում է սովորում, ու հեգնանքով քմծիծաղեց:

— Չէ՛, մի՛ ժպտա, ուզո՞ւմ ես հայրիկիդ անունն էլ ասեմ: — Եվ մարդը ասաց. — Անդրանիկ:

Տղան ավելի զարմացավ, մոռացավ, որ երրորդ դասարանում է սովորում, ու ծիծաղեց: Նա գլխի չընկավ, որ մարդը կարդացել է աշակերտական տետրի երեսին գրված անունը, հայրանունն ու ազգանունը: Բոլորը ուրախ ծիծաղեցին:



Նա այսպես մինչև վերջին կանգառը կգնար, բայց պետք էր իջնել, և դրա համար ճանապարհի կեսին խնդրեց վարորդին՝ մեքենան կանգնեցնել:

Նա ավտոբուսից դուրս եկավ՝ բոլորին հրաժեշտ տալով: Եվ վարորդն ասաց.

— Բարի ճանապարհ:

Եվ նա ասաց.

— Բարի՜ գնալ:

Նրա իջնելուց հետո ավտոբուսում շարունակվեց խոսակցությունը: Մարդիկ իրար հետ սկսեցին զրուցել, հարցեր տալ, պատասխանել: Վարորդը անցած ճանապարհը անդրադարձնող հայելու մեջ նայեց կանգառում իջած ուղևորին, որ դանդաղ գնում էր այգիների կողմը և թվաց, թե նա՝ այդ տարօրինակ ուղևորը գիտեր այսքան քիչ բանով մարդկանց ուրախացնելու գաղտնիքը:

Վարորդը նորից նայեց հայելու մեջ, այժմ մարդը ավելի էր հեռացել, դարձել էր փոքրիկ մի կետ ճանապարհի ոլորանին կանգնած: Եվս մի քանի մետր, ու ավտոբուսը կթեքվի աջ, մարդը էլ չի երևա, բայց ուրախությունը, աշխուժությունը, որ նա թողեց իր ետևից, կշարունակվի ավտոբուսում մինչև ճանապարհի վերջը:



# Ողջույն քեզ, Մայիս

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ողջո՛ւյն քեզ, Մայի՛ս՝
Տոնական ամիս.
Տեսքով քո չքնաղ
Մեզ կյանք ես տալիս
Քայլե՛նք, պիոներնե՛ր,
Գործով մեր փայլենք.
Ալ դրոշները մեր
Միշտ բարձր պահենք
Ամեն տեղ թող մեր
երգը զիլ հնչի,
Մեր ոտքերի տակ
Քարը կանաչի.
Հավքերը անուշ
Թռչեն ու կանչեն,
Աղբյուրներն աշխույժ
Հնչեն, կարկաչեն
Թող ազգերն ամեն
Ապրեն հաշտ, խաղաղ.
Ամեն հարկի տակ
Հնչի երգ ու տաղ
Թող խաղաղության
Աղավնին ճերմակ
Ազատ սավառնի
Զինջ երկնքի տակ
Ողջո՛ւյն քեզ, Մայի՛ս՝
Տոնական ամիս,
Տեսքով քո չքնաղ
Մեզ կյանք ես տալիս



Նկ. ՀՐԱՉ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

# ՊԱՖՖԻ՛ՆԸ, ԼԵ՛ՆԴԻ՛Ն ԵՎ ՀԱՐՄԱՆ ԹԱԳԱՎՈՐԸ

ՌՈՄ. ԲԵՐՇԱԴՍԿԻ

«Պաֆֆին» անունը դուք երևի ոչ մի անգամ չեք լսել: Չէ՞: Իսկ «Լենդի»-ն նույնպե՞ս: Ասենք, դուք այնքան էլ շատ բան չեք կորցրել: Անունը մնում է անուն: Բայց հետաքրքիր է նրա հետ կապված պատմությունը:

Ուրեմն «պաֆֆին» Հարմանի լեզվով նշանակի մեկ շիլլինգի տասներկուերորդական մասը, այսինքն՝ մեկ պենս: Հարմանն այդ անվանումը ստեղծել է հատկապես Լենդիի համար: Բայց որպեսզի չշփոթվեք, հարկավոր է պատմել նաև այն մասին, թե ով է Հարմանը և ինչ է նշանակում Լենդի:

Լենդին մի փոքրիկ քարքարոտ կղզի է, որը գտնվում է Շոտլանդիայի ափերից մոտ քսան կիլոմետր հեռու, Բրեստոլի ծոցում:

Շատ հին ժամանակներում, 13-րդ դարում, այստեղ հաստատված ֆեոդալը կղզում կառուցեց հաստ պատերով, պաշտպանական աշտարակներով մի ամրոց, որ հետագայում դարձավ Բրեստոլի ծոցի ահն ու սարսափը:

Գիշեր ու զօր բերդի պարսպի վրայից պահակները հսկում էին, գիշեր ու զօր նրանց ռազմանավերը շրջում էին բաց ծովում, որևէ նավից հարկ կորզելու նպատակով: Լենդիի տերերը շատ դաժան ու ագահ էին, իսկ նրանց նավակներն այնքան արագաշարժ էին, որ հասնում էին բոլոր այն նավերին, որոնք փորձում էին չենթարկվել Լենդիի օրենքներին:

Ինքը՝ Բրիտանիայի թագավորը ստիպված էր հաշվի նստել Լենդիի տիրակալների հետ և 16-րդ դարում նա հայտարարեց, որ Լենդի կղզին ինքնավար է և չի ենթարկվում որևէ այլ պետության:

Այն օրվանից շատ բան է փոխվել: Ֆեոդալական բարոնների նավակները, որոնք մի ժամանակ ահ ու սարսափ էին տարածում, վաղուց փտել են: Լենդի կղզին կորցրել է իր նշանակությունը: Նա կորավ իր տիրոջ սերունդների հետ միասին: 1927 թվականին այնտեղ մնացել էր ընդամենը 12 մարդ: Եթե նրանք էլ մեռնեին, կղզին կհամարվեր անմարդաբնակ: Անգլիական կառավարությունը նույնիսկ փակեց այնտեղի փոստային բաժանմունքը, որը քառասուն տարի գոյություն էր ունեցել: Իմաստ ունե՞ր արդյոք ինչ-որ տասը հոգու համար փոստային բաժանմունք պահել:

Բայց հանկարծ ոմն բանկիր Հարման դիմեց բրիտանական կառավարությանը, առաջարկելով, որ կղզին վաճառի իրեն: Կառավարությունը անմիջապես համաձայնեց: Դեռ չէին հասցրել պայմանագիրը օրինականացնել, երբ բանկիր Հարմանը անսպասելի կերպով իրեն հայտարարեց... Նորակազմ Լենդի պետության թագավոր: Չծիծաղեք, հենց այդպես էլ եղավ: Հետո նա պահանջեց, որ արքունի դատարանը ճանաչի իրեն և տա այն բոլոր իրավունքները, որոնք ժամանակին բրիտանական թագավորը տվել էր Լենդիի նախկին տիրակալներին: Նրան բնավ էլ չի վերաբերում, որ չորս հարյուր տարվա ընթացքում օրենքը հնացել է և չի նորոգվել: Դատավորը զգեստավորված էր միջին դարերում ընդունված տարազով. ամենօրյա բաճկոնի վրայից հագել էր սև թիկնոց, որը



չորս հարյուր տարուց էլ ավելի զարդարում է բոլոր անգլիական դատավորներին: Նա հպարտ էր օրենքի կուռքին առանց առարկության ենթարկվելու իր պատրաստակամությամբ: Ինչպես դարերի ընթացքում Մեծ Բրիտանիայի դատավորները, այնպես էլ այժմ, դատավարության ժամանակ, նա մուրճիկով հարվածեց դատական սեղանին և հաստատեց, թե Հարմանն այսուհետև համարվում է Լենդիի տերն ու տիրակալը: Թող հաղթի օրենքը: Եվ թող մեկ անգամ էլ բոլորն իմանան, որ անսասան են բրիտանական օրենքները:

Անգլիայում սիրում են հպարտանալ իրենց հնամենի ամրոցներով: Լորդերի պալատի նախագահը դարեր շարունակ նստում է բրդով լի պարկի վրա, քանի որ ժամանակին բուրդը ներկայացնում էր Անգլիայի արտադրության հիմնական միջոցը:

Այս ամենը միայն ծիծաղաշարժ ու հնացած չէ: Այդ ամենի մեջ, իհարկե, կա բավականին խորամանկ և միևնույն ժամանակ բնավ էլ չհնացած թաքուն միտք: Այն բոլորը, ինչ արվում է «բարի, հնավանդ Անգլիայում», ինչպես նրանք են ասում, անպայման արվում է օրենքով:

Ես միշտ հիշում եմ Անգլիայի համար բավականին հատկանշական մի դեպք: Այն կարելի էր նույնիսկ որպես անեկդոտ պատմել, եթե իրականություն չլիներ:

1865 թվականին Լոնդոնում մի մարդ նամակ գցեց փոստարկղ, որը հասցեագրված էր իր ծանոթ միստր Աթքինսին, որ նույնպես բնակվում էր Լոնդոնում: Երբ փոստարկղից հանեցին ու ներկայացրին փոստային բաժանմունք, նամակն ընկավ պահարանի հետևը և այնտեղ մնաց վաթսունհինգ տարի: Հետագայում փոստի շենքը շարքից դուրս եկավ և որոշեցին քանդել այն: Միայն այդ ժամանակ բանվորները պատահականորեն հայտնաբերեցին այդ հին նամակը, որի նամականիշն էլ դեռ չէր կնքված:

Նամակը երկրորդ անգամ ընկավ փոստարկղ: Նոր շենքում գտնվող փոստի բաժանմունքում ըստ օրենքի կնքեցին նամականիշը, բայց քանի որ եղած նամականիշը հանված էր օգտագործումից, ծրարի վրա նշեցին, որ հասցեատերը պարտավոր է լրացուցիչ վճարել փոստային ծառայությանը:

Նամակատարը ուղևորվեց դեպի այն տունը, որի հասցեն գրված էր վաթսունհինգ տարի առաջ:

Ամեն ինչ առաջվա նման իր տեղում էր. թե՛ տունը, թե՛ բնակարանը և նույնիսկ միստր Աթքինսը: Բայց ոչ այն Աթքինսը, որին հասցեագրված էր նամակը, այլ նրա ծերացած որդին: Դա, իհարկե, նշանակություն չունեցավ՝ Աթքինսը Աթքինս էր: Այդ իսկ պատճառով նա առանց առարկության նամակատարին վճարեց պահանջված գումարը և մեծ հետաքրքրությամբ սկսեց կարդալ նամակը: Չէ՞ որ միայն նամակն էր ուշ հանձնվել, մնացածը կատարվել էր ըստ օրենքի:

Մնում է միայն մի քանի խոսք ասել այն մասին, թե ինչ է փոխվել Լենդի կղզում այն օրվանից, ինչ նա դարձավ Հարման «թագավորի» «պետությունը»:

Հարմանն անմիջապես սկսեց «պետական» բու-

րըն գործունեություն: Առաջին հերթին մի ռեստորան կառուցեց և «թագավորական» հրամանագրով թույլ տվեց, որ այն բաց լինի գիշեր ու ցերեկ:

Կղզին անմիջապես հրապուրեց բազմաթիվ անբան հարուստների, որոնք այստեղ գալով հրճվում էին մինչև լուսաբաց: Շոտլանդիայում, որի հետ հարևանություն էր անում կղզին, բարքերն ավելի խիստ էին, և ռեստորաններն էլ շատ շուտ էին փակվում:

Հետագայում Հարմանն ստեղծեց իր ոստիկանությունը, որպեսզի ամեն ինչ այնպես լիներ, ինչպես իսկական թագավորություններում: Ոստիկանության համար ստեղծեց նաև հատուկ համազգեստ: Հետո դրամ կտրեց և, որպեսզի ոչ մեկը այն չշփոթեր հանրածանոթ անգլիական պենսի հետ, Լենդիի «կառավարությունը» նոր դրամն անվանեց պաֆֆին, չնայած պաֆֆինը բոլորովին էլ դրամ չէ, այլ՝ թռչուն:

Այդ թռչունը բնակվում է Լենդիում և Հյուսիսային Ատլանտիկայի այլ վայրերում: Տգեղ է այդ թռչունը, մոտավորապես ագռավի մեծության, մեծ ու լայն կտուցով: Բայց, իհարկե, դա նրա գործն է, իր դրամն է, կուզի ագռավ կանվանի, կուզի՝ պաֆֆին:

Հարմանը Լենդիում վերականգնեց նաև փոստը: Նա հավատացած էր, որ Լենդիի նամականիշերը կարող են լավ փող բերել ֆիլատելիստներից և տպագրեց ամբողջ մի սերիա: Բոլոր նամականիշերի վրա գտնվում էր պաֆֆինի գլուխը: Կային կես պաֆֆինանոց նամականիշեր, կային և մեկ պաֆֆինանոց, երկու, չորս, վեց և իննը պաֆֆինանոց, կային նաև մեկ շիլլինգանոց, ընդ որում, Հարմանը այստեղ էլ կամեցավ յուրահատուկ լինել: Շիլլինգանոց նամականիշի վրա տպագրեց ոչ թե «1 շիլլինգ», այլ «12 պաֆֆին»: Այնպես, ինչպես եթե ռուբլիանոց նամականիշի վրա գրեին «100 կոպեկ»:

Հարման «թագավորը» մեռավ 1955 թվականին:

Մահից մեկ տարի առաջ նա հասցրեց հրատարակել հոբելյանական նամականիշեր, ի պատիվ Լենդի «պետության» կողմից վճարովի փոստային նամականիշերի ստեղծման քսանհինգամյակի: Ես պահում եմ «Լենդի թագավորության» նամականիշերը, որպես կենդանի նշան այն բանի, թե ինչի է ընդունակ եղել դրամը այն աշխարհում, որտեղ միակ թագավորը դրամն է: Իսկ թե ինչպես են կոչվում դրանք. դոլլարներ, շիլլինգներ կամ թե նույնիսկ պաֆֆիններ, ոչ մի նշանակություն չունի:

Ռուս. թարգմ. ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

# ՇՏԱՊԵԼՈՒ ՎԱՐՁԸ



ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Շտապում է…

Շտապով ետ է գցում վերմակը, չնկատելով, որ ընկավ հատակին: Շտապով հագնում է գուլպաները, մեկը պատահաբար ուղիղ, մյուսը՝ ծուռ: Շտապով հագնում է շորերը և չի հասցնում բոլոր կոճակները կոճկել:



Եվ... վազում է լվացվելու:

Վայ այն լվացվելուն: Կատվալվա եթե չեք տեսել, տեսեք: Մատների ծայրերը թրջում է, տանում քթին. հազիվ քթին հասցրած, ձեռքը գցում է սրբիչին:

Թանաքի հետքերը սրբիչի վրա թողած՝ նետում է այն դեպի կախարանը:

— Սրբիչը ցած գցեցիր, բարձրացրո՛ւ...— անպայման նկատում է տնեցիներից մեկն ու մեկը:

Իսկ նա չլսելու, չնկատելու է տալիս, երբ արդեն հասցրել է իրեն գցել խոհանոց: Այստեղ շտապելուց անզգուշաբար հարվածում է տատի թևին: Տատն էլ կարծես դիտմամբ սպասում էր նրա ներս վազելուն, որ կաթի եռացող կաթսան կրակից վերցնի: Կաթը թափվեց, բարեբախտաբար ո՛չ տատի, ո՛չ էլ իր վրա:

— Ա՜խ...— այնուամենայնիվ հառաչեց տատը, իսկ նա շտապեց առաջ:

Երևի կարծում եք շտապում էր նրա համար, որ քաղցած էր և ուզում էր որքան կարելի է շու՜տ հասնել հացին:

Ոտքով որոնում է աթոռն այնտեղ, ուր նա պետք է լիներ, ոտքի թաթը աթոռին հասավ ուշացած: Գտավ աթոռը ենթադրած տեղից շատ հեռու, չարացած քաշեց տակն ու թրմփ՝ ընկավ վրան, միաժամանակ զույգ ձեռքով մեկը մյուսի հետևից շաքարի կտորներ լցնելով թեյի բաժակի մեջ այնքան, որ թեյը կիսով թափվեց, իսկ վերջին կտոր շաքարը մնաց բաժակից դուրս:

Հետո մի ձեռքը գցեց հացին, մյուսը՝ պանրին, կրծմրծեց մի քիչ հաց, մի քիչ պանիր, երբ ուզեց թեյը խմել, տեսավ նրա մեջ ավելի շատ հաց ու պանիր է փշրվել թափվել, քան երևի կերել էր: Բաժակին ձեռք չտված՝ վեր կացավ, աթոռը ոտի թաթով այնպես ետ հրելով, որ նա գնաց կպավ պատին:

— Ա՜խ...

Շարունակությունը եթե կար էլ, չի լսում: Նա արդեն իր գրասեղանի մոտ է: Շտապ-շտապ բացում է պայուսակը, շտապ-շտապ գրքերն ու տետրակը հանում:

— Ա՜...

Ի՞նչ «ա՜...» Կարծում եք նա շտապում էր, որպեսզի որքան կարելի է շուտ նստի ու դասե՞րը պատրաստի: Ո՛չ: Նա այժմ ավելի շատ է շտապում:

Գրիչը ձեռքն է առնում և շտապ-շտապ գրում... Այսօրվա ամսաթվի փոխարեն՝ երեկվանը: Այդ նկատում է, երբ երկու տող արդեն գրել էր: Շտապով ամսաթիվը ուղղում է և շարունակում գրել... չնկատելով, որ երկու տող մեջ տվեց: Շտապում էր և գրածը մի անգամ չկարդաց, որ տեսներ, թե որտեղ էր ընդհատել:

Համարելով, թե գրեց-պրծավ, տետրը շտապով ծալեց ու նետեց մի կողմ, ապա ձեռքն առավ պատմության դասագիրքը: Լավ չէր հիշում նոր դասի էջերը: Շտապել էր ու չէր նշել: Այդ ոչինչ: Հիմա հեռախոսը կվերցնի՝ ընկերոջից կիմանա: Էլ ինչի՞ համար է հեռախոսը, եթե ոչ մարդկանց կյանքը հեշտացնելու: Վերցրու հեռախոսը և խնդրիր ընկերոջդ թելադրել խնդիրների լուծումը, վերցրու հեռախոսը և հարցրու...

Հարցրեց տեղն ու տեղը գլուխն եկած հազար ու մի բան, խոսեց հազար ու մի բանի մասին և, խոսափողը ցած դնելուց հետո, հիշեց, որ չհարցրեց պատմության դասի տեղը:

Բայց շտապում էր և հեռախոսը երկրորդ անգամ ձեռքը չառավ: Բացեց ենթադրած էջն ու հապշտապ կարդաց, անծանոթ բառերի վրայից թռչելով, որ ստիպված չլինի գլուխ ջարդել նրանց իմաստը հասկանալու վրա, շատ ծանոթ բառերն էլ կուլ տալով:

Ապա որքան կարող էր՝ արագ, գրքերն ու տետրերը լցրեց պայուսակի մեջ: Ժամանակ չկորցնելու համար չստուգեց, թե արդյո՞ք այդ օրն հարկավոր բոլոր պարագաներն էր վերցրել, և շտապեց...

Նախասենյակում, ճամփան կարճելու համար ցատկեց նոր տոտիկ-տոտիկ անող Ռուզիկի վրայով: Թռիչքը հաջող էր, Ռուզիկը չփռվեց գետնին ու չճչաց: Իսկ նա ոգևորված դուրս թռավ, թողնելով, որ հետևից բաց մնացած դուռը տատը գա ծածկի:

Աստիճանները թողած, սահեց բազրիքի վրայով: Մի ակնթարթ, և մուտքից դուրս թռավ փողո-

լի գնդակի նման, գլուխը խփելով ներս մտնող անծանոթ կնոջ փորին։

— Անկա՛րգ...

Մեղմ էր կնոջ ձայնը։ Երևի կարծեց, թե նա դըպրոցից ուշանում էր, դրա համար էր գլխապատառ վազում։

Իսկ ժամանակ դեռ կար։ Եվ նա սկսեց վազել դպրոցի բակի մի ծայրից մյուսը, հողի նման պըտտվելով և պատահողին պայուսակով հարվածելով։

Վերջապես հնչեց զանգը։ Նա խելագարի պես վազեց, որ մուտքից առաջինը ներս մտնի։ Վազքի թափը նրան միջանցքի մի ծայրից մյուսը հասցրեց, նետեց մի պատից մյուսը։ Եվ թեև շտապում էր, դասարան մտավ ամենավերջում։

Շտապով գրավեց իր տեղը, շտապով գրիչն ու տետրը հանեց, հասցնելով միաժամանակ հարևան նստարանին նստածին բզել, ետ դառնալ՝ հետևի նստարանին նստածի ականջին փսփսալ ու փըռթկալ, իսկ կողքինին հարցնել, թե ինչ են գրելու։

— Ազատ շարադրություն...

Ազատ շարադրությո՞ւն։ Շատ բարի։ Շատ ազատ արտագրում է կողքինից մի բառ, հետևի նստարանին նստածից՝ երկրորդ բառը, կողքի նստարանին նստածից՝ երրորդ բառը, նստած տեղը հողի պես պտտվելով, որովհետև շտապում էր։

Եվ թեև այդքան շտապում էր, զանգը հնչելուց հետո միայն, ամենավերջում, մոտեցավ ուսուցչին, հանձնեց տետրը։

Այսպես, դասերն հաջորդեցին մեկը մյուսին և ավարտվեցին։ Աշակերտները խումբ-խումբ դուրս եկան դպրոցից և շտապեցին իրենց տները։

Տուն էր գնում նաև մեր հերոսը, բայց դանդաղ, շա՜տ դանդաղ, լուռ, մինչև անգամ լուրջ։ Ասես հասել էր նպատակին, ուզածն ստացել ու խաղաղվել։ Այլևս շտապելու բան չուներ։

Ուզածը պայուսակի մեջ էր, դրանից էլ պայուսակն այնպես էր ծանրացել, ասես քար ու կապարով էր լցվել։

Քար ու կապարից ծանր էին այն թվանշանները, որ տանում էր տուն։

Իր օրվա վաստակն էր այդ, իր շտապելու վարձը։

## Գարնանամուտ

ՆԱՏԱԼՅԱ ԳԻՆՈՍՅԱՆ

Ծագում է արփին,
Երգում ծիծառը,
Արտի ճամփին
Սայլում է գառը։

Սզուշն է ճռճվում
Զորերի միջին,
Ծիտն է ծլվլում
Ծտի ականջին։

Երկնքով լազուր
Չվում են անծայն,
Ճերմակ ու գանգուր
Ամպերը գարնան։

Ժպտում են, ասես,
Ծաղկունքը շաղոտ.
Ինչքա՜ն սիրուն ես,
Գարնան առավոտ։



## Գարնանային առավոտ

ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ

Ձյուն ու սառույց է,
Ձյուն ու սառույց է,
Իսկ փոքրիկ առուն,
Խորամանկ լռում
Սառցե վերմակ է
Իր վրա առնում,
Իբրև թե ցուրտ է,
Ես էլ եմ սառում։

Ջուր ու սառույց է,
Ջուր ու սառույց է,
Իսկ ջահել առուն,
Խենթ ու վարարուն,
Ձնծաղիկներ է
Ջրի հետ բերում
Ու հարց է տալիս.
«Ե՞րբ կգա գարուն»։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՀԱՄԱՐՁԱԿԸ

ՀՐԱՅԱԿ ՍԻՐԱՄ

Նկ. ԷԴՎԱՐԴ ՋԱՓԱՐՅԱՆԻ

Ցուրտ սառույց։ Երևանյան անսովոր սառնամանիք։

Մեկ շաբաթ ևս արձակեցին մի քանի դպրոցներ։

Տաք սենյակում տասներորդցի Անահիտի շուրջըն են հավաքվել երեխաները։ Գագիկի ու Կարինեի այտերը կարմրել են. նրանք նոր են տուն մտել։ Երկու ժամից ավել Գագիկը Կարինեին սահնակով սղղացրել է սառցապատ փոքրիկ դարավանդից։

Ճիշտ է, Կարինեի հետևում կանգնած, նրա ուսերից բռնած, սղղացել է նաև Աղասիկը, բայց փոքրիկը դժգոհ է.

— Էլի՛, էլի՛ գնանք... ե՛ս... սահնակ եմ ուզում։

— Բավական է, ցուրտ է,— ուզում է համոզել Անահիտը, մի քիչ էլ վաղը կսղղանք, ցուրտ է։

— Անո՛, մի՛ ասի՝ ցուրտ է... Աղասին էլի սղղա՞։

— Չէ՜, Աղասին խելոք է. հիմա արդեն թեյ կխմի, կքնի, վաղը... Խելո՛ք Աղասի։

— Մի՛ ասի՝ խելոք Աղասի, տար սղղալո՛ւ...

Գագիկը միջամտում է և քաջաբար ասում.

— Աղասի՛ ջան, այսօր բավական է, այ, վաղը կիրակի է, կգնանք Ծաղկաձոր, դահուկներով կըսղղանք...

Աղասիկը կարծես համոզվում է և ծծկեր քույրիկի՝ Գայանեի ձեռքն է տալիս ռետինե ծիտիկը։

— Հիմի Գայանիկին ու ծիտիկին չոփ-չոփ կանենք։

— Այո՛, Գայանեն էլ ամառ-ձմեռ չի հարցնում, էս ցրտին էլ ամեն օր լողանում է։

— Լողանա, որ շուտ մեծանա,— ասում է Գայանեի մայրիկն ու փոքրիկ տաշտի գոլ ջրի մեջ լողացնում է թմբլիկին։

Գայանեն չոփ-չոփ է անում, ծիտիկին էլ հետը լողացնում, հետո արդեն մայրիկի կաթն է անուշ անում և մուշ-մուշ քնում։

Անահիտը մոտենում է դաշնամուրին և սկսում է նվագել Շտրաուսի «Վիեննական անտառի հեքիաթները»։

Կարինեն ու Աղասիկը առանձին ուշադրությամբ են լսում։

— Օհ, օ՜հ,— գոչեց Աղասիկը,— ծիլի-վիլի՛, ծիլի-վիլի՛։

Եվ երբ Անահիտը ավարտում է նվագը, Աղասիկը քնած Գայանեի կողքից վերցնում է ծիտիկը, դնում դաշնամուրի վրա ու ասում.

— Անո՛ ջան, ծիտիկի պատմությո՛ւնը։

— Այո՛, այո՛, Անահի՛տ, պատմի՛ր, պատմի՛ր... Աղասիկը ծիտիկի մասին էլ կլսի, հետո կքնի, որ առավոտյան էլի սահնակով սղղա։

— Լավ,— համաձայնում է Անահիտը։

Բոլորը լուռ նրան են նայում։

Եվ Անահիտն սկսեց.

— Այն տարի էլ ձմեռը շատ ցուրտ էր։ Չորս կողմը նստած էր ձյունի հաստ շերտ։ Ոչ միայն մեր տնից երևացող Ծիծեռնակաբերդը, այլև քաղաքի փողոցներն ու կտուրները կարծես պատած էին սպիտակ սավանով։ Մի օր ճաշից հետո ես գնացի հայրիկիս աշխատասենյակը և խնդրեցի որ նա ինձ բացատրի մի քանի բարդ բառեր։ Հետո մենք կանգնեցինք լուսամուտի դիմաց և նայեցինք դուրսը։ Մեր միակ բարդու մերկ ճյուղե-



րին ձյունը փաթաթվել էր, ինչպես մենք բամբակն ենք փաթաթում եղևնուն: Հանկարծ մենք նկատեցինք, որ մի հարյուրի չափ ճնճղուկներ թափվեցին լուսամուտի տակ ընկած մի ինչ-որ բանի վրա: Ի՞նչ էր դա, կարտոֆիլի կճե՞պ, թե՞ հացի կտոր, դժվար էր որոշել: Ես հայրիկիս հարցրի. «Հայրի՛կ, ինչո՞ւ համար են այս ճընճղուկներն այսպես խմբով թափառում»:

Հայրս պատասխանեց. «Նրանք սոված են և կեր են որոնում»: Հետո պատվիրեց, որ գնամ հացի մանրուքներ բերեմ: Ես բերի ոչ միայն մանրուք, այլև մի կտոր հաց: Ես ու հայրիկս մանրեցինք հացի կտորն էլ և, լուսամուտը բացելով, փշրանքները փռեցինք լուսամուտի եզրերին: Հետո լուսամուտը փակեցինք և քիչ հեռու կանգնելով՝ սկսեցինք դիտել: Երբ մենք լուսամուտը բացեցինք, ճնճղուկները խուճապով թռան ու թառեցին դիմացի տանիքին: «Վա՜յ, ափսո՜ս, — ասացի ես, — փախան»: «Սպասի՛ր, համբերի՛ր», — հանգըստացրեց հայրս: Եվ իրոք, երկար սպասելու կարիք չեղավ: Ծիտիկներից մի քանիսը վերադարձան և թռվռում էին լուսամուտի դիմաց, բայց դեռ ոչ մեկը չէր մոտենում մեր փռած փշրանքներին: Վերջապես մի ճնճղուկ, որ մյուսներից տարբերվում էր իր խոշորությամբ և կարծես թե ավելի երկար կտուցով, թռիչքով մոտեցավ և ոստոստալով սկսեց ուտել լուսամուտի գոգին փռված փշրանքները: Հայրիկս ասաց. «Անահիտ, տե՛ս, այս ճնճղուկն ամենից համարձակն է»: «Հայրիկ ջան, ես նրա անունը կդնեմ Համարձակ», — հրճվանքով ասացի ես:

Եվ ահա, քիչ հետո Համարձակը թռավ բարդու ճյուղին նստած իր ընկերների մոտ, ապա նրանց հետ կտուց-կտցի տալով՝ կարծես ինչ-որ բան հասկացրեց ու միասին թռան հասան լուսամուտի մոտ: Համարձակը նորից ոստոստալով սկսեց ուտել փշրանքները, քիչ անց արդեն փշրանքներն սկսեցին անուշ անել երկրորդը, երրորդը, չորրորդը: Համարձակն այս անգամ արդեն թռավ դեպի դիմացի կտուրը և այժմ արդեն վերադարձավ իր ամբողջ երամի հետ: Ինձ համար արդեն մեծ հաճույք էր ամեն առավոտ և ճաշին Համարձակի ու նրա երամի համար հաց մանրել, կերակրել նրանց:

— Իսկ հիմա, — չհամբերեց Կարինեն, — չէ՞ որ այս ձմռանն էլ ծիտիկները ուտելու բան չունեն:

— Այո՛, հիմա էլ մի ամբողջ երամ կերակրում եմ, — ժպտալով ասաց Անահիտը, — առավոտյան միասին կկերակրենք ծիտիկներին:

— Ես է՛լ, ես է՛լ, — ծիտիկի պես ծլվլաց Աղասիկը:

— Այո՛, այո՛, անպայման, նոր Համարձակի բաժինը դու կմանրես, — ասաց Անահիտը և շարունակեց. — Մի կիրակի օր մենք մի բարեկամի մոտ ճաշի էինք հրավիրված և ուշ վերադարձանք տուն: Ես անմիջապես գնացի հայրիկիս առանձնասենյակը և ի՜նչ տեսնեմ, ինձ ծանոթ Համարձակը՝ թը՛խկ-թը՛խկ, կտուցով ծեծում է լուսամուտի ապակին և կարծես ասում է. «Անահի՛տ, ո՞ւր ես գնացել, ախր մենք սոված ենք»: Ես նորից լուսամուտի գոգը լցրի փշրանքներով: Համարձակը մի երկու անգամ կտցահարեց, հետո թռավ մոտիկ տանիքը և քիչ հետո ճնճղուկների երամը թափվեց փշրանքների վրա:

Եվ այսպես ամեն օր:

Ճնճղուկները բոլորը բարեկամացան ինձ ու հայրիկիս և այլևս չէին խուսափում, երբ ես լուսամուտը բացելով նոր բաժին էի ավելացնում նրանց ճաշին:

Վերջապես ձյունը հալվեց, արևը շողաց, գարուն էր: Ճնճղուկներն ուրախ թռիչքով գնացին մոտակա այգիներն ու Ծիծեռնակաբերդը, բնության զարնանաբույր բարիքներով սնվելու:

Ես միշտ աշխատում էի որոշել, թե որ մեկն է Համարձակը, որ իր ընկերների համար ճամփա բացեց դեպի մեր լուսամուտը:

Ես ու հայրիկս շատ ուրախ էինք, որ փրկել ենք հարյուրից ավելի ճնճղուկների կյանք:



# ՓՈՔՐԻԿ ԿՐԻԱՆ

ՎԱՐԴԹԵՐԵՍ ԳԱՐԱԳՅՈԶՅԱՆ

...Արևի արթնանալուն ի վեր բավական ժամանակ էր անցել, բայց հովը ո՛չ կրցած էր խանգարել կապույտ ծովի երեսը, ո՛չ էլ կրցած էր տերևներու հանգիստը վրդովել։ Երկնակամարը անբիծ ատլասի նման պրկված էր երկրի վրա, և ամպի որևէ արատ չկար այնտեղ։

Հիմա կրկնապես ուրախ էր արևը և իր մազերը սանձարձակ փռել էր ամենուրեք։

Արևի մի շող խուսափելով ծովեն, գնաց ընկավ փոքրիկ կղզու ծովափի ավազների մեջ։ Արևի շողը մանր ավազի հետ մի քիչ խաղալուց հետո հետաքրքրությամբ կանգ առավ մի ճերմակ, մեծ գնդի առաջ։ Ապա շրջեց անծանոթ գնդի բոլորտիքը։ Տակը մտավ, վրան ելավ և բախելիք դուռ չգտավ։ Բայց հետաքրքրությունից գնդի շուրջը, տակը նայեց, վրան ելավ, ո՛չ բան գտավ, ո՛չ էլ բան հասկացավ։

Եվ երբ հուսահատ ուզեց հեռանալ, մի ձայն լսեց գնդի միջից։ Անապարանքով վազեց ձայնի կողմն ու անհամբեր սպասեց։ Հետզհետե կաստականար ձայնը, կարծես ճերմակ գնդի ներսեն մեկը կմրճահարեր։

Քիչ հետո ճերմակ գունդը երկու մասի բաժանվեց և գիտե՞ք մեջեն ինչ ելավ. փոքրի՜կ, փոքրի՜կ մի կրիա։ Տունը շալկած, չորս ոտքերը, գլուխն ու պոչիկը դուրս ցցած՝ մի փոքրիկ կրիա։ Զարմացած կանգնեց տաքուկ ավազի վրա. նայեց շուրջը և տեսավ անկյունում պահ մտած Շողիկին։

Վարանոտ քայլերով մոտեցավ նրան, զգաց նրա տաքությունը, ուրախացավ ու բարևեց։ Շողիկն էլ բարևեց և հետո հարցրեց.

— Ո՞վ ես դու, որտեղի՞ց ես գալիս։

Փոքրի՜կ, փոքրի՜կ, շա՜տ փոքրիկ կրիան մի վայրկյան մտածեց, առջևի տոտիկով գլուխը քորեց, աչքերը բացխփեց, բայց հարցի պատասխանը չկարողացավ գտնել։

— Չգիտեմ։ Իսկ դու որտեղի՞ց...

— Երկնքեն, — ասավ Շողիկն ինքնավստահ ու դուրս ելավ անկյունից։

Տեսնելով փոքրիկ կրիայի շփոթված վիճակը, Շողիկն ավելի ինքնավստահ մոտեցավ նրան ու հարցրեց.

— Ո՞վ է քո մայրը...

Փոքրի՜կ, փոքրի՜կ, շա՜տ փոքրիկ կրիան այս անգամ ավելի շատ մտածեց, ավելի շատ քորեց իր գլուխը, ավելի շատ բացխփեց իր մեծ աչքերը, բայց կրկին հարցի պատասխանը չկրցավ տալ ու այս անգամ մի քիչ հուզված ասաց.

— Չգիտեմ, իսկ ո՞վ է քո մայրիկը։

Զարմանքի մի բռնկում արձակեց Շողիկը։

— Արևն է իմ մայրը, — ասաց։ — Հո՜ն, երկնքի արևը։ Ասել է, թե դուն մայր չունի՞ս...

Պատասխան չգտավ փոքրիկ կրիան, ու Շողիկը երես տված աղջկա շարժումներով հեռացավ։

* * *

Փոքրի՜կ, փոքրի՜կ, շա՜տ փոքրիկ կրիան Շողիկի հեռանալուց ավելի շատ ազդվեց, քան թե նրա ասած խոսքերից։ Բայց քանի քայլում էր, տաքուկ ավազի մեջ մխրճելով իր տոտիկները, հետզհետե կմտաբերեր Շողիկի հետ ունեցած իր



խոսակցությունը, որից ավելի կստանար հուզումն ու վրդովումը։ Արդյոք ինքը մայր չունի՞, որտեղի՞ց է եկել, ո՞ւր պիտի գնա։ Ինչո՞ւ ինքն էլ Շողիկի պես չգիտեր իր որտեղից գալը։ Ինչո՞ւ

չգիտեր, թե ով է իր մայրը: Երբեք չպիտի մոռանար Շողիկի արձակած քրքիջը:

Թե՛ կխորհեր և թե՛ կքայլեր փոքրիկ կրիան: Չգիտեր, թե որքան էր քայլել, քանի ժամ էր անցել: Արդեն ո՛չ ժամանակի մասին, ո՛չ էլ հեռավորության մասին տեղեկություն ուներ: Բայց զգաց, որ այլևս իր փոքրիկ ոտիկները չէին մխրճվում իր կոխած տեղերը: Հետո տեսավ, որ միօրինակ նույն գույնը չունեին իր անցած տեղերը: Տեսակ-տեսակ ձևերով կանաչ մասեր էին բուսել նրանց մեջ: Հողի միջից բուսած այս կանաչությունները անուշ հոտ ունեին և հրապուրիչ տեսք:

Փոքրիկ կրիան ուզեց տեսնել այդ կանաչությունները ավելի մոտիկից: Մոտեցավ դրանցից մեկին, բերնը երկարեց ու սկսեց կամաց-կամաց հոտոտել: Ճիշտ այդ պահին, ինքնաբերաբար բերանն առավ կանաչ խոտերից մեկը և սկսեց ծամել: Զարմանալի շա՜տ անուշ և շա՜տ համեղ էր: Նորից փորձեց և, երբ կպատրաստվեր ճաշակել, լսեց մի անծանոթ ձայն.

— Ա՜յ, քիչ մնաց արմատախիլ անեիր ինձ:

Ցնցվեց փոքրիկ կրիան: Ո՛չ, երբեք չվախեցավ, բայց ուզում էր իմանալ, թե ձայնը որտեղի՞ց եկավ:

— Է՜յ,— կրկին ասաց ձայնը,— քիչ մնաց արմատախիլ անեիր ինձ, ավելի կամաց չե՞ս կարող ուտել:

— Ի՞նչը,— ասաց փոքրիկ կրիան զարմացած:

— Ինձ:

— Դու ո՞վ ես:

— Կանա՜չ-կանա՜չ խոտիկն եմ ես, քիչ մնաց արմատախիլ անեիր ինձ:

Անմիջապես գլխի ընկավ փոքրիկ կրիան, թե ով էր իր հետ խոսողը ու, դառնալով դեպի կանա՜չ-կանա՜չ խոտիկը, հարցրեց.

— Ներողությո՛ւն, բայց արմատախիլ անելն ի՞նչ է:

— Կանա՜չ-կանա՜չ խոտիկը մեռցնել,— ասաց խոտիկը վշտացած:

— Բայց ո՛չ, երբեք այդպիսի նպատակ չունեի:

— Ինչպե՞ս թե չունեիր,— ասաց խոտիկը ձայնը կոծելով:— Մի՞թե չգիտեիր, որ այդչափ ուժով քաշելով, կարող էիր ինձ արմատահան անել:

— Բայց ո՞ւր է, դու արմատ չունես,— ուզեց արդարանալ փոքրիկ կրիան:

— Հը՜,— ասաց կանաչ-կանաչ խոտիկը թերահավատ,— արմատներս հողի տակն են, ես հողի միջի աղերով եմ սնվում: Չգիտեի՞ր...

— Չգիտեի,— պատասխանեց փոքրիկ կրիան, անչափ շատ սիրեցի ձեր համն ու գույնը և չէի



Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ուզենա վնաս հասցնել:

Տեսնելով փոքրիկ կրիայի անկեղծ խոստովանությունը, կանաչ-կանաչ խոտիկը համոզվեց, որ նա դիտմամբ չէր ուժով քաշել:

— Տերևներիս համը դուր չեկա՞վ քեզ,— մեղադրանքի շեշտ դնելով իր խոսքերի մեջ, ասաց խոտիկը:

— Բա՜յց...— ուզեց արդարանալ փոքրիկ կրիան, սակայն կանաչ-կանաչ խոտիկը կտրեց նրա խոսքը:

— Հիմա, առանց այդպես ուժով քաշելու, կարող ես տերևներիցս մի քանի հատ պոկել և ուտել: Չէ՛, մի՛ մտահոգվիր իմ մասին, եթե եղանակները լավ գնան, մի քիչ էլ անձրև գա, կարող եմ ուրիշ ծիլեր արձակել ու կանաչ-կանաչ տերևներ ունենալ:

Փոքրիկ կրիան զգուշությամբ մի քանի տերև պոկեց և ճաշակելուց հետո, բարի անձրև ու արև մաղթեց կանաչ-կանաչ խոտիկին ու սկսեց կամաց հեռանալ:

# ԱՆՑՈՒՄԸ



ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Փնթի...

Ասել են, շատ են ասել. և՛ մայրը սրտնեղած՝ ցեխոտ շալվարը լվացքի տաշտի մեջ գցելու ժամանակ, և՛ ուսուցիչները՝ պաշտոնավայել, հանդիմանական, և՛ դասընկերուհիները՝ ծաղր ու ծիծաղով: Ինքը չի հաշվել, թե քանի անգամ ասած կլինեն: Բայց զարմանում է, թե ինչպես չեն ձանձրանում նույնը կրկնելուց: Նորություն հո չէ՞: Բոլորը գիտեն, և ինքը՝ բոլորից առավել: Բայց ոչ ոք չի ուզում հասկանալ, որ ինքը լավ է զգում, երբ հագի շորը թափթփված է: Այդ ժամանակ զգում է, որ ազատ է, և սանձերը բաց թողած՝ ինչ անկարգություն էլ անի, կսազի: Ինքն ուզում է քամու նման թռչել, սուրալ փողոցն ի վեր, ուզում է, որ դռների, պատերի վրայից վերացնեն «արգելված է» մակագրությունները և ամեն մեկին թույլատրվի անել, ինչ որ քեֆն ուզենա: Բայց ինքը հասկանում է, որ այդպես չի լինում և այն, որ թե՛ փոքրերը, թե՛ մեծերը, յուրաքանչյուրն ունի իր պարտավորությունները, և մարդիկ պետք է ապրեն կանոնավոր, սովորեն, աշխատեն, ստանան աշխատավարձ, գնան շուկա, ճաշի նստեն ժամանակին, տոներին զվարճանան, իսկ հանդիսավոր պահերին լինեն զուսպ և լուրջ: Երևի այլ կերպ չի կարելի: Սակայն կարգ ու կանոնին ընտելանալն այնքան էլ հեշտ չէ, նույնքան դժվար է հագի շորը ամբողջ օրը պահել մաքուր ու կոկիկ:



Եվ հիմա, երբ նա գնում էր դպրոց, նորից նույնն էր զգում:

— Շորերդ մաքո՛ւր կպահես, փնթի՛ ջան,— քընքուշ հեգնանքով ասել էր մայրը, նրան ճանապարհ դնելիս, թեև զգացվում էր, որ նա չի հավատում, թե խնդրանքը կկատարվի:

Ինքը մի քիչ վիրավորված էր մոր անվստահությունից, թեև չէր կարող նրան իրավացի չհամարել: Այդ մոռանալու համար նա սկսեց մտածել, թե արդյո՞ք լավ է, որ իրենց դասարանը երկրորդ հերթի է, թե՞ ավելի լավ կլիներ, եթե առաջին հերթի լիներ: Եվ միաժամանակ նա նայում էր մյուս մայթին՝ որոնելով այդ կողմերում ապրող իր մի դասընկերոջը:

— Տղա՛ ջան, ինձ կօգնե՞ս դիմացի մայթն անցնել, ձեռքիս բեռ կա:

Նա նայեց տարեց կնոջը. նիհար է, կռացած: Ցանցավոր տոպրակի մեջ՝ կաղամբ, սոխ, կարտոֆիլ, գազար և միս, որի կարմիրը թափանցում էր թրջված թղթի միջով: Մյուս ձեռքում կար մի ծանրոց:

— Խնդրեմ,— ասաց նա՝ իր համար անսպասելի

քաղաքավարությամբ։ Ինքը գիտեր, որ մաքուր, կոկիկ հագուստը պարտավորեցնում է այդպես խոսել։ Գիտեր նաև, որ եթե թափթփված լիներ, այդ կինը ուրիշին կխնդրեր։

Տղան իր պայուսակն անցկացրեց ձախ ձեռքին, աջով վերցրեց կնոջ ցանցատոպրակը. ծանր էր։ Նա զարմացած մնաց, թե ինչքա՜ն ուժ կա այդ նիհար կնոջ մեջ։

Այդ անցումի վրա կանաչ-կարմիր լուսացույց չկար, և պետք էր անցնել՝ հաշվի առնելով ավտոմեքենաների հոսքը։ Տղան առաջ նետվելով՝ ուզեց արագ կտրել փողոցը, նախքան աջակողմով մի երկնագույն «Վոլգա» իրենց կհասներ։

— Սպասի՛ր,—կնոջ ձայնը վախեցած էր, տղան զգաց նրա ձեռքի սեղմումն իր թևին և ակամա ինքն էլ սրտողեց։

— Սպասի՛ր, տղա՛ ջան,—ավելի հանգիստ կրկնեց կինը,—մեքենան անցնի, հետո...

«Վոլգան» վզզալով անցավ, նրա հետևից՝ մի «Զայկա», որ փորձում էր անցնել նրանից։ Ա՛յ, հիմա կարելի է. տղան առաջացավ և աչքի պոչով նկատում էր, թե ինչպես կզակը առաջ ցցած՝ տարեց կինը անվստահ հայացքով չափում էր փողոցի երկարությունը և իրենց մոտեցող կանաչ «Պոբեդայի» հնարավոր արագությունը։ Նա ամբողջ ընթացքում կախ էր ընկնում տղայի թևից՝ կրկնապատկելով բեռի ծանրությունը։ Տղան նեղվում էր, բայց ոչինչ չէր ասում։ Նրանք հասան փողոցի մեջտեղը։

Ձախակողմով, մոտոցիկլետին շատ ուղիղ նստած մի երիտասարդ՝ լուրջ, հանդիսավոր, հոնքերը կիտած՝ անցավ հպարտությամբ։ Ճամփակիցում սպասելիս՝ տղան մտածեց, որ իր շտապելն ու առաջ նետվելը կարող է այնպիսի խուճապի մատնել տարեց կնոջը, որ իրոք մի փորձանք պատահի. այնպես որ իր վիճակի հետ հաշտված՝ տղան սպասեց, մինչև որ նա ազդարարեր շարժվելու թույլատվությունը։

— Ի՞նչ ես քնել,—համարյա ճչաց տարեց կինը,—շո՛ւտ, շուտ անցի՛ր, քանի դեռ...

Տարեց կինը առաջ էր ընկել և գլուխը անհանգիստ շրջում էր մեկ դեպի տղան, մեկ էլ բեռնատարի կողմը, թեև սա գտնվում էր անվտանգ հեռավորության վրա։

Հասան մայթին, և տարեց կինը թեթևացած հառաչեց։ Տղան պարզեց նրան մթերքի տոպրակը։ Կինը վերցրեց և ասաց.

— Փողոցում շատ անուշադիր ես, տղա՛ ջան։ Այդպես չի կարելի։ Կընկնես մեքենայի տակ։ Բա դու մեղք չե՞ս, բա ծնողներդ մեղք չե՞ն...



Տարեց կինը խրատում էր, և տղան իրեն զըսպում էր, որ անքաղաքավարի խոսք չասի, մի խոսք, որ վայել չէ իր հագի մաքուր, կոկիկ շորերին։ Նա հնարավորին չափ հանգիստ ասաց.

— Ես դպրոց եմ գնում, դասից կուշանամ...

— Գնա՛, տղա ջան, գնա՛...

Տղան հեռացավ սրտնեղած ու տխուր։ Թեև նրա շնորհակալության կարիքը չուներ, բայց և մի քիչ դառնացած էր։ Նա մտածում էր, որ, երևի, մարդ շնորհակալության պիտի չսպասի։ Մայրն արդյոք շնորհակալության սպասո՞ւմ է, երբ ամեն օր տրտնջալով հանդերձ՝ լվանում, կարկատում, արդուկում է իր փնթի որդու շորերը։ Գոնե ինքը...

— Տղա՛ ջան, տղա՛ ջան...—լսեց նա տարեց կնոջ ձայնը՝ յոթ-ութ քայլ հեռավորությունից։

Նա բարկացած շրջվեց. էլ ի՞նչ կա...

— Շնորհակալությո՜ւն, տղա՛ ջան, մոռացա։ Ապրե՛ս, շա՜տ ապրես, քեզ պես շնորհքով տղաները մոր համար ուրախություն են։ Եվ ոչ միայն մոր համար...

Նա սովոր չէր այդպիսի գովասանք լսելու և չգիտեր իրեն ինչպես պահի, որ ծիծաղելի չլինի։ Գլխով արեց և շտապեց հեռանալ։



ԲՈՔԻՆՀԵՅՄՅԱՆ ՊԱԼԱՏԸ

# Խաչատուր Եսայան

Վերջերս նկարիչ Խաչատուր Եսայանը մի խումբ արվեստագետների հետ եղավ Անգլիայում և Շոտլանդիայում: Այս համարում մենք տպագրում ենք այդ շրջագայության ժամանակ նրա կատարած աշխատանքներից մի քանիսը:

ԹԱՂԱՄԱՍ ԼՈՆԴՈՆՈՒՄ, ՈՐՏԵՂ ԱՊՐԵԼ Է Վ. Ի. ԼԵՆԻՆԸ






ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Ու՜ւ, ու՜ւ,— գնացքն է մեր
Սուլում ուժգին Զանգվի ձորում:
— Ուռա՜, ուռա՜,—գոչում ենք մենք.
Թաշկինակներ թափահարում:

Եվ հղում եմ ես օդային
Համբույրներ իմ տատին, քեռուն.
Ասես ինչ-որ հեքիաթային
Աշխարհներ ենք գնում հեռու...

Կանգնել է իմ առջև ահա
Մի մորաքույր բարձրահասակ:
Բազմել է մի չաղլիկ տղա
Նրա գրկում՝ ձեռքին տոմսակ:

— Խնդրեմ նստե՛ք, մորաքույր ջան,—
Վեր եմ կենում ես իմ տեղից:
— Ո՛չ, սա գնացք է մանկական,—
Նստեցնում է տեղս նորից:

— Լավ կլինի՝ քիչ նեղ անեք
Ու տեղ անեք մեր Գևորգին.
Նա ուզում է գնացք նստել
Եվ ոչ թե իր տատի գոգին:

Հրմշտում ենք իսկույն իրար
Ու փոքրիկին շուտ տեղ անում

Մորաքույրն է ժպտում ուրախ,
Ծանր բեռից թեթևանում:

— Մենք Մոսկվա ենք գնում, գիտե՞ք,—
Ասում է նա կես կատակով:
Ու խորամանկ ժպտում ենք մենք.
— Մենք էլ՝ Ռոստով, հետո՝ Խարկով:

— Իսկ դո՞ւ ուր ես գնում, Հրանտ:
— Ես գնում եմ Լենինգրադ:
— Իսկ դո՞ւ, Վարդան:
— Ես՝ Հրազդան:

Իսկ դո՞ւ, Արիս...
— Ես էլ՝ Փարիզ...

Երգում ենք մենք, ուռա կանչում,
Ու գնացքն է փնչում, թռչում...
Բայց, ա՛յ քեզ բան, կանգ է առնում
Մեկ էլ հենց նույն կայարանում:

Ու նետվում ենք մենք կարոտով
Մայրիկների գիրկը նորից.
Ասես եկել ենք հեռավոր,
Մեր երազած քաղաքներից...



## ԱՅՆՊԵ՜Ս ԵՄ ՈՒԶՈՒՄ ՄԵԾԱՆԱԼ ԵՍ ՇՈՒՏ

Մ. ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ

Վաղ առավոտյան զարթնում եմ, լսում՝
Երկաթե կռունկն երգում է դրսում:
Թեկուզ ուշ էլ եմ քնում բոլորից,
Շարունակում է հոնդալ նորից:
Բանում էր նա միշտ, ու միայն իրենք՝
Բանվորներն էին փոխում հերթն իրենց:
Իսկ երբ անցկացան ամռան օրերը,
Տեսնեմ՝ կռունկն էլ չկա՛, կորե՛լ է,
Եվ ցանկապատն են կառույցի քանդել:
Ու տղաներ են աղմկում այնտեղ:
Դու մի ասի, մեր անկյունում մի նոր
Շենք է հայտնվել գեղեցիկ գույնով:
Այնպե՜ս եմ ուզում շուտ մեծանալ, շուտ,
Որ կռունկավար դառնամ ես հմուտ:

Թարգմ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Ձիու կյանքը

ԱՐՏԱՎԱԶԴ ՀԱՄԲԱՐՅԱՆ

Նկ. ԼԵՎՈՆ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Ըհը՛, ծաղկահավն իջավ ժայռին։ Մնաց ընդամենը մի քանի քայլ։ Ասենք, եթե նա ժայռի ճեղքից պարզեր հրացանը ու, թրը՛խկ՝ կրակեր, գուցե մի բան դուրս գար։ Բայց նա հեռատես մարդ էր, ուստի սողեսող առաջացավ, ու տարավ ժայռախինու սաղարթը։

— Հերն անիծած,— վզզաց նա,— կյանքումս էսքան վազվզած չկամ։

Ծաղկահավը նորից թռավ ու իջավ ուրիշ ժայռի։

Դաշտամորեխներ է կտցում,— բարձրաձայն ասաց նա, շտկվեց ու այս անգամ շրջանցեց թփուտը։

Թռչունն, իսկապես, դաշտամորեխներ էր կտցում՝ մի տեղից սլանում մի ուրիշ տեղ։ Հետո մի անգամ էլ թռավ ու թևերը թափահարելով անցավ համարյա գետնին կպած։ Բայց հենց այդ պահին մի կրակոց լսվեց և ծաղկահավը չհասցրեց անգամ ճչալ։ Մարդը հաղթական նայեց թփերի ճեղքից, հրացանն ուսը գցեց ու քայլեց դեպի հովիտը, որտեղ, նրա կարծիքով, ընկած էր ծաղկահավը։

— Միևնույն է,— գոհունակությամբ ասաց նա,— չէ՞ որ ասացի՝ ձեռքիցս չես պրծնի։

Օրը շատ շոգ էր. կարմրաթուշ արևը թառել էր բարձր հաճարենիների կատարին ու ոչ մի կերպ չէր իջնում։ Ամբողջ հովիտը լցված էր ծաղկաթև թիթեռնիկներով։

— Հաճելի տեղեր են,— հիացավ նա,— նույնիսկ այստեղ մեռնելն էլ հաճելի է։ — Եվ անմիջապես նկատեց.— Իսկ ինչու՞ մեռնել որ... Չեմ հասկանում, թե ով գլուխս մտցրեց։

Աչքերով խոտը ետ տարավ ու գտավ սպանված ծաղկահավը։ Նա պոկեց գլուխն ու նետեց. ծաղկահավը կախեց կողքից։

— Մնում է մի բան ուտել,— որոշեց նա։

Երբ իջավ ծաղկած հովիտը, նրան թվաց, թե ինչ-որ վրնջոց լսեց։

— Օհո՛,— չռեց աչքերը,— մտքովս անգամ չէր անցնի, թե այստեղ մի պառավ ձիու կհանդիպեմ։ Չէ, ինչե՞ր եմ ասում. այս ձին ընդամենը հինգ տարեկան կլինի։

Նա չշարունակեց, կանգնեց ու ձեռքերը կոնքերին դրած՝ դիտեց խոտերի մեջ նստած ոսկեզեղմ ձիուն։

— Դու գլորվել ե՞ս, ջանըս,— քնքշորեն ասաց.— երևում է, որ կողերդ բերծված են ու բավականաչափ էլ տրորված։ Դու խոսել չես կարող, հապա ի՞նչ անենք...

Նա ձեռքը դիպցրեց ձիու բաշին, խճճեց.

— Ասենք, դա ի՞նչ կարևոր է, քո տերից ես իսկույն հասկացա։

Եվ կռացավ, ուշադիր նայեց ձիու թախծոտ աչքերի մեջ։

— Մի՛ ընկճվիր,— կարեկցեց նա,— ես կարծես թե հասկանում եմ քո վիճակը. դու շուտով մի քուռակ կունենաս, ես քեզ կօգնեմ... Հը՞։

Ձին գլուխը հակել էր ցած ու լուռ սրտատրոփում էր։ Իսկապես, դա սրտաճմլիկ էր։

Նա զննե՞ց ձիուն՝ հասկանալու համար, թե գլորվելիս որևէ լուրջ վնասվածք չի՞ ստացել, և նկատեց, որ փորի տակ պատռվածքներ կան։

— Օ՜ֆ, օ՜ֆ,— մղկտաց նա,— անիրավ խնձորաբերն են արել։ — Եվ սկսեց հառաչել։ — Բայց քեզ կօգնեմ, և դու մեշտ ու հանգիստ մի քուռակ կունենաս։

Հետո նա մոռացավ բոլոր առաջվա ասածը. «Մնում է մի բան ուտել»։ Եվ սկսեց չորացած ցախ ժողովել, որ դիմացի ծառաստաներին, ինչքան ասես, թափած էր։ Հովտի մեջ կապույտ ծուխ երկինք ելավ։

— Հիմա ես կխորովեմ այս ծաղկահավն ու մեկ էլ վայրի աղունիկը, հետո կմտածեմ, թե ինչ անեմ։

Նա հանեց որսածայր դանակն ու փայտե շամփուրներ սարքեց, թռչունները մեկ-մեկ պահեց կրակի վրա։

Նրան դուր եկավ աղունիկի միսը. երբ կերավ պրծավ, հրացանը կախեց ծառի ճյուղից և իջավ ձիու մոտ։

— Դե, ասա, ի՞նչ անեմ քեզ, ա՜յ ձի. մի՛ վրնջա. երևի կողերդ ցավում են, հա՞։ Անասնաբուժությունից էլ խելքս բան չի կտրում...

Մի որսի քամի բարձրացավ, ծաղկած հովիտը բուրեց մեղմաշշուկ խշշոցով։ Հաճարենիները տարուբերեցին համատարած ճյուղերը, և արևը գլորվեց ցած։ Երկինքը դարձավ մուգ կապույտ ու սառնոտ։ Մարդը մի քանի անգամ փորձեց ձիուն ոտի կանգնեցնել՝ հեռավոր ձիանոցները քշելու հույսով, բայց խեղճ կենդանին ելնելու ջանք անգամ չարեց ու տխուր վրնջաց։

— Չեղա՞վ,— նա համակերպվեց այն մտքին, որ գիշերն այստեղ պետք է անցկացնի, թե չէ թողնել հեռանալը, իր կարծիքով, մարդավարի չի լինի։

Սկսեց պատրաստվել գիշերելու. գետնի մեջ խրփեց մի քանի ցցափայտ ու խաչաձև ճողեր դրեց, վրան փռեց ձեռքով հինգ նոր քաղած կանաչ

խոտը՝ դարձավ թախտի պես մի բան։ Հետո որոշեց, որ ծածկ էլ սարքի. հորիզոնում կուտակված ամպերը անձրև էին խոստանում։

— Ստացվեց հիանալի կացարան,— ուրախացավ նա, այստեղ, ինչ ասել կուզի, ոսկորներս մի թեթև կհանգստանան։

Նա դիտեց շրջակայքը՝ մորուքը բազմանշանակ ոլորելով.

— Էս կողմերում դաշտահավեր էլ են լինում։

Եվ գոհ եղավ, որ առավոտյան մի քանի դաշտահավ էլ կխփի։

Նրան թվաց, թե ձին ինչ-որ վրնջաց, մոտեցավ։ Կռացավ ու շոյեց ձիու ճակատը...

— Էդ դեպքում,— հորանջեց ինքն իրեն,— գուցե մի քիչ քնե՞մ...

Հովտի մեջ իջել էր գիշերը, երբ արթնացավ։ Լուսինը գլորվում էր լեռների կատարներով, և ամենուր ողողված էր կաթնապարար լույսով։ Այս ու այնտեղ լսվում էր մորեխների ճռռոցը, գետից նրան էր հասնում գորտերի կռկռոցը։ Նա նստեց տեսնելու, թե ինչպես են թփերի տակ կայծկլտում բազում, անհամար լուսատտիկները։

— Հը՞, ա՛յ ձի,— նա գուրգուրեց ձիուն և ուշադիր դիտեց,— հը՛, ինչպե՞ս ես...

Ձին փնչաց։ Նա վերադարձավ ու մեկնվեց թախտին։ Այս անգամ նա երազում տեսավ, որ նորից թմբից-թումբ է թռչկոտում ծաղկահավը ու ինքը հալածում է նրան։

— Միևնո՞ւյն է,— զռաց նա,— ձեռքիցս չես պրծնի։

Եվ արթնացավ, վազեց ձիու մոտ։ Ընկնում էին անձրևի հաստուկենտ կաթիլները, երկինքը դժգունած էր, ու գետից ելնում էր սառը քամին։ Եղեգնուտը բռնկված էր տագնապահար խշշոցով։ Ձին այս անգամ ընկել էր մի կողքի և վրնջում էր։

— Սա հենց այնպես...— հուսահատ թափահարեց գլուխը,— դեռ ոչ մի բան չկա։

Նա երկար չպառկեց թախտին, նրան թվաց, թե ձին ինչ-որ անհանգիստ բուռացնում է։

— Թյո՛ւ,— փնթփնթաց նա,— սա ի՞նչ բան է։

Հանկարծ նա նկատեց, որ ձիու ականջները ուշիմ դառնում են այս ու այն կողմ, կլանում ինչ-որ խշրտոց։ Մարդն արագորեն շրջվեց ձախ ու թփերի մեջ նկատեց մի բան։ «Օհո՛»,— պոռթկաց նա և այս անգամ շրջվեց աջ. այնտեղ էլ խշշրտոց լսվեց։ Մարդը վերցրեց հրացանը, շուրջն աչք ածելով պառկեց թախտին։

— Թող էդ անիծած գայլերը ենթադրեն, որ քնած եմ։

Նա այդ դիրքով մնաց գրեթե մի ժամ՝ աչքը չկտրելով թփուտից։

— Մի քանի հատ են,— ատամները կրճտացրեց նա,— ուժները խեղճ ձիուն է պատում։

Ձին վախից ջանաց ոտնել, և հենց այդ պահին մի թխագորշ գայլ ցատկեց թփի տակից, պպզեց ու չորքթած սողաց։ Հրացանը որոտաց, գայլը ոռնաց, և մարդը նետվեց նրա կողմը։

— Ո՛նց էլ գլխին կպավ,— հրացանի փողով հրելով սպանված գայլի բաց երախը, ասաց նա ու դարձավ ձիուն.— Ասացի չէ՞, որ քեզ անօգնական չեմ թողնի, ա՛յ ձի...

Կրակը բորբոքվեց. Նա մեկնվեց թախտին ու ամբողջ գիշեր չկարողացավ քնել։ Թփուտների մեջ չէր դադարում խշրտոցը, և ձին մի գլուխ խրխնջում էր խրտնած։

— Երևում է, որ նա էլ մենակ չի եղել,— ասաց նա սպանված գայլի հասցեին,— բայց ձին էլ մենակ չի, թող իմանան, որ այստեղ մարդ կա։

Երկինքը դժգունեց, և լուսաբացը միանգամից սփռվեց ծաղիկների հովտում։ Դուրս եկավ մանուկ



արևը՝ շաղազանված ու բարի ժպիտով, ցողաթաց ծաղիկները շողշողացին հազարագույն։ Հովտի մեջ նորից լցվեցին մեծամեծ թիթեռնիկները։

Մարդը մի երկու լոր սպանեց, կերավ երեկվա խորոված ծաղկաճամբ և հանեց գայլի մորթին։ Նա ձիուց հեռու չգնաց, խոտ քաղեց ու գլխարկով ջուր բերեց, որ ձին խմի։ Հետո մի ցողուն պոկեց ու դրանով բշեց խեղճ ձիու հալածող ճանճերին։

— Վերջապես ի՞նչ եղավ,— դժգոհեց նա,— ինչ է, էս գիշե՞ր էլ պետք է մնամ էստեղ...

Զախպվեց։ Քուռակը ծնվեց միայն իրիկնամուտին։

— Բարև՛, անուշիկս,— ուրախացած ասաց մարդը քուռակին,— պինդ կաց՝ արդեն գտնվում ես հաստատուն գետնի վրա։

Մարդն այժմ էլ չարչարվեց քուռակին ծծեցնելու, հետո խոտով մաքրեց նրան ու դրեց ձիու առջև, որ գուրգուրի։ Եվ հենց այդ ժամանակ զգաց, որ հոգնած է։ Մի բարի գործ արած մարդու բավականությամբ նա ընկավ թախտին ու աչքերը փակեց։

Անձրև եկավ, մարդը հանկարծ արթնացավ ու քուռակին գրկած բերեց ծածկի տակ։ Ձին դեռ չէր կարողանում ելնել։ Եվ մարդը չմտածեց անգամ որևէ բանով ծածկել՝ «բան էլ չի լինի» մտածելով։ Անձրևը հորդացավ ու սկսեց կաթել։ Կրակը հանգավ։ Ու այդ ամբողջ գիշեր նա թրջվեց։

Առավոտյան նրան ողջունեցին արևը, թռչունների կանչը և թավշուն թիթեռնիկները։ Օդում տարածվել էր անուշ ծաղկահոտ։ Մարդը վազեց ձիու մոտ ու տեսավ, որ նա պառկել է՝ ոտները ցցված, անշարժացած, աչքերը կիսաբաց։ Ասես, մի ինչ-որ բանով հարվածեցին գլխին՝ աչքերը մթնեցին։ Ձին սատկել էր և դեռ չէր հասցրել իր վերջին հրաժեշտը տալու այդքան տանջանքով ծնած քուռակին, որ նոր պիտի ոտի ելներ ու տեղ գրավեր աշխարհում։

— Մի՞թե այս ամբողջը հենց նրա համար էր, որ տեսնեմ, թե ինչպես է մի հոյակապ ձի տանջամահ լինում...

Նա հրացանը ուսը գցեց, հոգնաբեկ գրկեց քուռակին ու ջանաց դարավանդով ելնել։ Կանգ առավ մի բլրի վրա, շրջվեց ու նայեց ցած։ Այնտեղ, ծաղիկների հովտում ճանճերը լափում էին անկենդան մարմինը, թախտն ու ծածկը մնացել էին թափուր։

— Տե՛ս,— ասաց նա՝ քուռակի գլուխը դարձնելով այն կողմը,— հիմա նա մենակ է մնացել այնտեղ՝ ձին։ Հը՞, մտածու՞մ ես, ո՛րբս։

Երբ ելավ լեռնալանջը ու ձգվեց բարձր լեռան գլխին, նա քուռակին ցած դրեց, հանգստացավ։



Ու այդ ժամանակ էլ տեսավ, որ երկու ձիավոր քառատրոփ սլանում են իր կողմը։

— Բարև՛ ձեզ,— ասաց նա,— ուշացա՞ք։

Ձիավորները կանգ առան, մի պահ հետաքրքրված դիտեցին մարդուն ու քուռակին։ Հետո նրանցից մեկը հարցրեց.

— Ը՞...ասել է, թե...— և ձիավորը լայնեզրը ետ տարավ ու առաջ հակվեց՝ գետնին դրածը մի լավ տեսնելու։

— Լուսաղեմին եղավ,— ասաց,— դժվարությամբ...

Ուզեց շարունակել, բայց ձիավորը նորից հարցրեց.

— Իսկ ձի՞ն...հիմա որտե՞ղ է։

— Հը՛մ,— նա թոթվեց ուսերը մեղավոր ժպտալով,— ձին սատկեց՝ գլորվել էր. այնտեղ հիմա ճանճերը լափում են։

Ու գլխով ցույց տվեց ձորը։

Երիտասարդն ու տարեցը շփոթված նայեցին իրար աչքերի մեջ։ Գետնին կանգնածը, արևից շլացնելով աչքերը, անքթիթ դիտում էր նրանց։

— Բան դուրս չեկավ,— հոգոց հանեց նա և ո-

գերված ավելացրեց.—Բռնակը մեզ որ աշխույժ լինի, հը՞…

Նրանք չպատասխանեցին. երիտասարդ ձիավորը բռնակին դրեց Թամբին՝ առջևը, ու ինքն էլ ցատկեց։

— Իսկ մենք, երեք օր շարունակ փնտրում ենք…

Տարեց ձիավորը նկատեց նրա ուսին գցած Թրխագորշ մորթին, բայց ուշադրություն չդարձրեց։ Նա թեքեց ձիու գլուխը և խթանեց։

Շնորհակալությո՛ւն, եղբա՛յր…գուցե մի անգամ էլ մենք…

Մարդը լսեց. նրան հետաքրքրեց, թե ինչպես են սլանում այդ սև ու սպիտակ ձիերը՝ հաղթահարելով Թփուտներն ու փոսերը, որ հետզհետե հեռացան ու հեռվում երկու աղոտ կետեր դարձան։ Նա բարեսրտորեն ժպտաց՝ օրորելով գլուխը և հրացանը գցելով ուսին, շեղվեց ճանապարհից։ Իսկ մի անպիտան ծաղկահավ նորից թմբից-թումբ էր թռչկոտում ու դաշտամորեխներ կտցում։

## ՊԱՏԿԵՐ

ԳՈՒՐԳԵՆ ՓԻԼԹԱԿՅԱՆ

Գետակի ափին անտառն է բուրում,
Արտի հասկերն են օրորվում նորից,
Եղնիկն է դունչը վեր պարզել սիրուն.
Մեղվի երամն է բարձրանում ծորից։
Լողում են դանդաղ սագերը լճում,
Փրփուրն է պայթում ջրի աչքի մեջ.
Երկնքից կապույտ վարդեր են իջնում,
Ու ծվծվում են լորերը անվերջ։





## ԻՄ ՍՈԽԱԿԸ

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Ես մի սիրունիկ
Ու նախշուն սոխակ ունեմ վանդակում
Նա պատուհանից նայում է տխուր
Եվ միայն ձյուն է տեսնում մեր բակում։



Այն ո՞վ է, ո՞վ է՝
Ապակու վրա ծաղիկ նկարում
Եվ պատուհանը
Ճերմակ ծաղիկով զուգում, զարդարում
Սոխակը հանկարծ թևին է տալիս,
Պար գալիս տեղում,
Ուրախ նայում է ճերմակ ապակուն
Ու մեղմ գեղգեղում։
Նրան թվում է՝ ձմեռը անցել,
Գարուն է բացվել,
Ապակու վրա ճերմակ ծաղիկ է
Փռվել, տարածվել։
Եվ սոխակն այնպե՜ս քաղցր է երգում՝
Ջմեռվա ցրտին։
Ապակու վրա բացված ծաղիկը
Մո՜տ է իր սրտին։

# Ջրահարսը

Է. ԿԵԼԴԵՐԱՐՈՒ
(Ռումինական գրող)

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Փոքրիկ ջութակը ձեռքին՝ գրեթե վազելով, ճեղքում էր եղեգնուտների խիտ մացառուտները, գնում էր հեռու-հեռո՜ւ, դեպի այն կախարդական լիճը Նա ուզում էր անպայման իմանալ, թե ինչ խորհրդավոր մեղեդիներ են ապրում այն անդորրության մեջ, որը խախտվում էր միայն աղվեսի բարակ ձայնով։

Դա կլինի նրա առաջին համերգը։ Թռչուններ, արտեր, լճեր ու կղզյակներ... Լսեցե՛ք, այսօր իր առաջին համերգում ձեզ համար պետք է նվագի ապագա մեծ կոմպոզիտոր և ջութակահար Միլուցե Ջերնեյը։

— Միլու-ուցե-ե՜։

Դա ու՞մ ձայնն է։ Թե՞ սխալ լսեց։ Այստեղ միայն քամին էր թափառում, լճերի չարաճճի քամին՝ գաղտագողի անցնելով ցածր խոտերի վրայով.

—Միլու-ու-ցե-ե՜։

Ձայնը բարակ էր, տատանվող և լսվում էր կարծես լճի հատակից։ Ո՛չ, հատակից չէր։ Հեռվում, որտեղ արեգակի հրաժեշտի հայացքի տակ ջրերը վարդագույն էին դարձել, ջրահարսը դուրս էր եկել իր խիտ ու փարթամ հյուսքերը չորացնելու։

— Միլո՜ւցե, է՜յ, Միլո՜ւցե, ի՞նչ է, խլացե՞լ ես։

Օ՛յ, ինչ կոպի՜տ է խոսում ջրահարսը։

— Դու, ի՞նչ է, դեռ բարկանո՞ւմ ես ինձ վրա։ Վե՛րջ տուր, եկ այստեղ լողանանք։ Ջուրը հրաշալի է։

Եվ նույն վայրկյանին լճի մակերեսին մնաց միայն զրնգացող արձագանքը, իսկ հյուսքերը անհետացան ջրի տակ։

Միլուցեն տարակուսանքով քայլեց դեպի ափը. ուշքի եկավ մոշուտում, երբ սանդալների վրայից անցնելիս սայթաքեց։ Որտե՞ղ էր տեսել այդ սանդալներն ու ուռենու ճյուղից կախված կարմիր զգեստը։

Հա-ա՜-ա՜, դա նորից նա՜ է։ Նույնիսկ այստեղ հանգիստ չի թողնում իրեն... իսկ այս հիմարը նրան ընդունել է ջրահարսի տեղ։

Հապա մտածիր, Ռալուկա Պոպ և ... ջրահարս։

— Դե ի՞նչ, Միլո՛ւցե, չե՞ս գալիս։

Աղջկա ձայնը հիմա լսվում էր բոլորովին մոտիկից։

— Կամ գուցե ե՞ս դուրս գամ։ Լա՛վ, գալիս եմ։ Ես վաղուց եմ ուզում քեզ հետ լուրջ խոսել։

Միլուցեն ինչ-որ անորոշ բան փնթփնթալով, դուրս եկավ ափից, ձեռքով տրորելով վնասված ծունկը. ապա ջութակի պատյանը թևի տակ առնելով, շրջվեց և դանդաղ քայլեց դեպի ետ։

Ռալուկան թոթվեց ուսերը, հանկարծ նրա այտերը բարկությունից սկսեցին այրվել։

— Զզվելի՛, ծնգծնգացրո՛ւ, ծնգծնգացրո՛ւ քո տուփը,— կանչեց նրա հետևից։ —Ուզեցիր մրցել գորտերի հետ և ճահճի վրա համերգ տալ։ Քո գլխից կցրվի մառախուղը, երբ մենք հարցդ կքննարկենք ջոկատի խորհրդում։ Քիթը բարձր է պահում, անում է, ինչ որ ուզում է և լաց է լինում, որ իրեն «չեն հասկանում»։

Բայց Միլուցեն չէր լսում։ Նա գնում էր, առանց ետ նայելու։ Թող հայհոյի, մտածում էր նա... ի՞նչ գործ ուներ նա այստեղ, իր թագավորությունում։ Այո՛, սա իր անկյունն է, Միլուցեն առաջինը գտավ, թափանցեց նրա գեղեցկության մեջ ու գովերգեց այն։ Ռալուկան իրավունք չուներ խախտելու նրա կախարդական աշխարհի սահմանները։ Նա չի կարողանում նրան հասկանալ։ Ռալուկային



հարկավոր է միայն սպորտ, իսկ այս լիճը նրա համար մարզվելու տեղ էր։ Այժմ չարժեր այստեղից հեռանալ։ Պետք էր այդ աղջկան նախատել այն բանի համար, ինչ տեղի էր ունեցել վերջին ժամանակներս և այսօր։ Վերջ ի վերջո, ո՞վ էր նա, այդ Ռալուկա Պոպը, որը ամեն անգամ կանգնում

էր նրա ճանապարհին։ Մի քանի ամիս առաջ տեղափոխվել էր իրենց փողոցի անկյունի նոր շենքը ու եկել նույն դասարանը։ Թվանշաններն էլ նույնիսկ յոթից-ութից բարձր չէին, միայն ֆիզկուլտուրայից էին միշտ տասը դնում։ Մի ամիս առաջ երբ նա ստանձնեց ձեռքի գնդակի կազմակերպման գործը, ամեն օր լաց էր լինում, եթե չէր կարողանում համոզել որևէ մեկին, սկսում էր մրթմրթալ, նրան ոչ մի կերպ չհաջողվեց համոզել Միլուցեին Ո՛չ պատի թերթում գրած դիտողությունները, ո՛չ էլ ժողովում եղած խոսակցությունները որևէ արդյունք չտվին։

Վիրավորե՞լ, նրա մտքովը չէր անցնում։ Մի՞թե կարելի է բարկանալ աղջկա վրա։ Նա, պարզապես, այլևս նրա հետ չէր խոսում։ Եվ ի՞նչ կարող էր նրան ասել։ Որ արտիստին չի սազում • կիսավարտիքով թռչկոտե՞լ, վազել գնդակի հետևից ՛ստադիոնով մե՞կ, որ սպորտը դատա՞րկ բան է... Եվ, վերջապես, նրա ի՞նչ գործն է, թե նա ման է գալիս քիթը ցցած։ Ի՞նչ կարող է նա հասկանալ երաժշտությունից։ Բայց չէ՞ որ կար այնպիսի մեկը, որից այդ Ռալուկան կարող էր սովորել ու գաղափար կազմել արվեստի մասին։ Ախր, նրա հայրը երաժշտության դասատու էր, ասում էին, որ երիտասարդ ժամանակ նա հիանալի ջութակահար էր և ելույթներ էր ունենում Բուխարեստի կոնսերվատորիայի մեծ դահլիճում։

Պատերազմը նրան կտրել էր բեմից, ու նա այլևս չէր վերադարձել այնտեղ։ Բայց և հիմա, երբ նրանց բնակարանի պատուհանները բաց էին լինում, կարելի էր լսել, թե ինչպես էր նվագում նա։ Քանիանգամ Միլուցեն թաքնվել էր յասամանի թփուտներում, նրանց պատի տակ։

Այդպիսի երեկոներին Միլուցեն նախանձում էր այն փոքրիկ աղջկան։ Նա այնտեղ էր, կարող էր լսել նրան առանց թաքնվելու... Միայն թե նրա համար դա նշանակություն չուներ։ Այն ժամանակ, երբ հայրը նվագում էր, նրա մտքերը, հավանորեն թափառում էին ինչ-որ տեղ վոլեյբոլի հրապարակի մոտ կամ գուցե զբաղված էին նոր զգեստներով։ Միլուցեն մի անգամ տեսավ, թե ինչպես նա պտըտվում էր հայելու առաջ։ Է՜խ, երաժշտության դասատուն պետք է ունենար ոչ թե աղջիկ, այլ տղա, և ինքը նրա նվագը կլսեր տանը, ոչ թե յասամանի թփուտների մեջ։

Նա զարմացած աչքերը բարձրացրեց, երբ տեսավ, որ կանգնած է ուղիղ դարպասի առաջ Մտքերը նրան այնպես էին կլանել, որ տղան չնկատեց, թե ինչպես հասավ տուն։

Եվ հանկարծ Միլուցեի սիրտն սկսեց արագ բաբախել, նա տեսավ, որ Ռալուկայի հայրը՝ երաժշտության ուսուցիչը, անցավ փողոցով։ Միլուցեն շտապեց բակ մտնել։ Նրան թվում էր, թե իր ամբողջ մտքերը կկարդային դեմքի վրա։ Եվ հանկարծ նա լսեց.

— Թանկագի՜ն, մի փոքր սպասի՛ր։

Միլուցեն չորս կողմը նայեց։ Մոտակայքում բացի երկուսից, ոչ ոք չկար։

— Այո՛, այո՛, երիտասա՛րդ, ես քեզ հետ եմ խոսում։ Դու Ռալուկայի հետ ես սովորում, այնպես չէ՞։ Ես նրա հայրն եմ։ Եկ ծանոթանանք,— նա մոտեցավ ու մեկնեց ձեռքը։

— Երաժշտության ուսուցիչ Թեոդոր Պոպ։

— Աշակերտ Միլուցե Ջերնեյ։

— Կարող ես ավելացնել, կոմպոզիտոր և ջութակահար։

— Ինչ ասացի՞ք... Ե՞ս,— զարմանքից Միլուցեն չկարողացավ խոսքն ավարտել։

— Դե լա՛վ, լա՛վ։ Չէ՞ որ ես բոլորը գիտեմ, կեցցե՛ս դու։



— Գուցե դուք սխալվել եք... գիտեք... ես...

— Ինչպես, մի՞թե դու չես Ռալուկայի ընկերը, որն ապրում է այս տանը և միշտ մեծ ոգևորությամբ ջութակ է նվագում։ Ահա թե ինչ եմ ուզում ասել քեզ ես լսել եմ քո կոմպոզիցիան։ Երեկ, ահա այստեղ, դարպասի մոտ։ Անցնում էի բոլորովին պատահմամբ և...

— Եվ ի՞նչ...

— Եվ սովորականի նման։ Ռալուկան իմ ուշադրությունը դարձրեց դեպի քո նվագը։

— Ո՞վ, նա՞...

— Գիտե՞ս, թանկագի՛ն, ես չկարողացա իմանալ քո նվագած մեղեդին։ Ինձ այն շահագրգռեց։ Ռալուկան ասաց, որ դու զբաղվում ես կոմպոզիցիայով։ Ես մեծ հետաքրքրությամբ լսեցի քո ստեղծագործությունը, ինձ դուր եկավ, այդ պատճառով էլ ես քեզ կանչեցի։

— Ընկե՛ր ուսուցիչ, դա մեծ ուրախություն է ինձ համար։

— Ուրախությունը, Միլո՛ւցե, թող ապագային։ Եթե ցանկանում ես, որ քեզնից դուրս գա իսկական երաժիշտ, դու պետք է աշխատես, սովորես մեծ ցանկությամբ և համառորեն։ Իսկ քեզ դեռ շատ է պետք սովորել։ Այդ խնդրում ես երևի կկարողանամ քեզ օգնել։

— Ես շատ շնորհակալ եմ ձեզնից, միայն թե, դուք, երևի, չգիտեք, որ ես և Ռալուկան... կամ, գուցե, նա ձեզ ասել է...

— Չգիտեմ և ոչինչ չեմ ուզում իմանալ։ Տուր ինձ պարտիտուրան։ Ես այն աչքի կանցկացնեմ, իսկ դու վաղը չէ մյուս օրը արի ինձ մոտ, կխոսենք։

Երկու օրից հետո, իրիկնադեմին, Միլուցեն անվճռականորեն գնում էր դեպի իրենց փողոցի անկյունի նոր տունը։ Հազարավոր տագնապալի մտքեր էին հուզում նրան։ Եթե Ռալուկան ասել էր ուսուցչին, որ... այն ժամանակ ամեն ինչ վերջացած է։

Ախր երբեք չես իմանա, թե ինչ կարելի է սպասել նրանից։ Ահա, օրինակ, ո՞վ կարող էր իմանալ, թե ինչու նա ամեն անգամ ուսուցչի ուշադրությունը դարձրել էր իր՝ Միլուցեի կողմը և միաժամանակ ինքը հորինել էր մի առիթ, որպեսզի Միլուցեն ցույց տա իր արհամարհանքը։ Եթե նա գար Միլուցեի առաջ դուռը բանալու, շատ հավանական է, որ այստեղ, հենց նրա քթի առաջ դուռը շրխկացներ։ Դե, ոչ, չի համարձակվի։ Ինչ ուզում է լինի, նրան հրավիրել էր ուսուցիչը... Բայց հանկարծ ուսուցիչը նույնպես...

Միլուցեն կանգնեց նրանց տան մոտ, իսկ մտքերը դեռ խառնված էին նրա գլխում։ Մի պահ կանգ առավ, հետո մոտեցավ շքամուտքին։ Վերևում ինչ-որ մեկը բացեց պատուհանը։ Միլուցեն ետ փախավ դեպի կտտկենու թփերը։ Փողոցում հնչեց ձայների մի հեղեղ։ Տղան տեղում քարացավ։ Այդ ի՞նչ է։ Պատուհանից տարածվում էր մի դյութիչ մեղեդի, որը գրել էր Միլուցեն...

Տղան մի շնչով բարձրացավ աստիճաններով վեր, բանկոնի կոճակներն արձակած, գզգզված մազերով։ Կարճ զանգ, և դուռը կամաց բացվեց։ Մթնում նշմարվեց ուսուցչի կերպարանքը։

Մատը դնելով շրթունքներին, նա շշնջաց.

— Լսու՞մ ես, նվագում է քո ստեղծագործությունը։ Եկ իմ հետևից։

— Նվագո՞ւմ է, ո՞վ։

— Ինչպե՞ս թե «ով»։

— Մի՞թե դուք չէիք։

— Ե՞ս, ես վաղուց չեմ նվագում, թանկագի՛ն։ Պատերազմի ժամանակից ի վեր...

Միլուցեի հայացքը սահեց ուսուցչի ձախ ձեռքի վրայով ու կանգ առավ ձեռնոցի վրա։ Նոր միայն հիշեց, որ դասատուին ոչ մի անգամ չէր տեսել առանց ձեռնոցի։— Ներեցե՛ք ինձ...

— Ը՛ս... Նստի՛ր ու լսի՛ր։

Միլուցեն ուսուցչի կողքին հիացմունքից անշարժացավ։ Մեղեդու ձայնը լճի շարժվող ալիքների նման կարծես հոսում էր նրա աչքի առջև։ Խշշում էին թփուտները, հյուսվում էին լացող ուռիների ճյուղերը, հեռվում ճչում էին աղվեսները, ոսկե ձկնիկները մարգարտաշարում էին խորությունները։ Այս բոլորը թվում էր հեքիաթային։

Միլուցեին չզարմացրեց նույնիսկ այն, որ ուշքի գալով՝ նա ապակյա բաց դռան միջով հարևան սենյակում տեսավ... ջրահարսին։ Ճիշտ այնպես, ինչպես նա մի անգամ տեսել էր նրան այնտեղ, իր սիրած լճի խորքում, սպիտակ շուշանների մեջ։ Միայն հիմա ջրահարսն իր փարթամ ծամերից հյուսել էր երկու մեծ հյուսք և ջութակ էր նվագում։

Ռումիներենից թարգմ. ԼԻԴԱ ԱՆԱՆՅԱՆ.

## ԾԱՂԿԱԶԱՐԴ ՄԱՅԻՍ

*Անտառն ու այգին ծաղկունքով զարդել,*
*Մայիս, դու կրկին մեզ հյուր ես եկել,*
*Մեզ կանչել ես դուրս՝ ուրախ շքերթի,*
*Բերել ես նոր հույզ, նոր խինդ մեր սրտին։*

*ԿՐԿՆԵՐԳ*

*Երգը շուրթերին ցնծում ենք, գոչում.*
*—Ծաղկազա՛րդ մայիս, քեզ հազա՛ր ողջույն.*
*Ողջույն քո ցողին, արևիդ շողին*
*Ու մեր պես անուշ հայրենի հողին։*

*Մեր ջերմ խոսքերով, երգերով պես-պես,*
*Մենք անհուն սիրով գովերգում ենք քեզ.*
*Դու ծաղկահասակ, դու ծաղկապսակ,*
*Քո ծիլ ու ծաղկով դու հազար տեսակ։*

*ԿՐԿՆԵՐԳ*

*(Ծաղիկի 4-րդ էջում տպագրված երգի խոսքերը)*



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

### ՓԻՂ

Փիղը քայլում է անկյունագծով, ցանկացած քանակությամբ դաշտերով: (Մի ուղղությամբ հերթափոխվող միագույն վանդակների շարքը կոչվում է անկյունագիծ):




ԱՌԱՋԱԴՐԱՆՔ: Տախտակի վրա դասավորեք հետևյալ դիրքը. սպիտակներ՝ Աa1, Նc1, Փc3, Փc4(4), սևեր՝ Աg8, Նd2, Փf6, Փf7(4):

Քանի որ փիղը քայլում է անկյունագծով, ապա c3 փիղը կարող է վերցնել f6 փղին և ընդհակառակը, f6 փիղը կարող է վերցնել c3 փղին: d2 նավակին c3 փիղը վերցնել չի կարող, որովհետև այն անկյունագծով սպիտակ արքային փակում է f6 փղի գրոհից: Ինչպես ասում են, c3 փիղը կաշկանդված է (անկյունագծով):

Փորձեցե՛ք ինքներդ՝ իսկ փղով ինչպիսի՞ քայլեր են հնարավոր այդ դիրքում:

---

Սկիզբը՝ նախորդ համարում:

### ԹԱԳՈՒՀԻ

Լավ ուսումնասիրելով նավակի և փղի քայլերը, դժվար չէ հիշել, թե ինչպես է քայլում թագուհին: Նա միավորում է իր մեջ նավակի ուղղածիգով ու հորիզոնականով քայլելու ընդունակությունը փղի՝ անկյունագծով քայլերի հետ:




ԱՌԱՋԱԴՐԱՆՔ: Խաղատախտակի վրա դասավորեք հետևյալ դիրքը՝ սպիտակներ՝ Աe1, Թe4, Փc2(3), սևեր՝ Աh8, Թa4, Նe8(3):

Սև թագուհին միավորելով իր մեջ նավակի և փղի քայլերը, կարող է գնալ b4, c4, d4 և e4, որտեղ նա վերցնում է սպիտակ թագուհուն, գրոհելով սպիտակ արքայի վրա, այսինքն՝ նրան հայտարարելով շախ: Նաև կարող է գնալ b3 ու c2, որ նա վերցնում է սպիտակ փիղը: Նա կարող է գնալ a1, a2, a3, a5, a6, a7, a8 և b5, c6, d7 դաշտերը:

Սպիտակ թագուհին կարող է շարժվել միայն «e» ուղղածիգով՝ e2, e3, e5, e6, e7 և e8, որտեղ նա վերցնում է նավակը: Այլ ուղղություններով նա չի կարող շարժվել, որովհետև պարտավոր է իր արքային շախերից փակել: Եթե չլիներ «e» գծի նավակը, ապա նա կարող էր գնալ h7 և մատ հայտարարել սև արքային: Ինքներդ համոզվեցեք այդ բանում:

### ՁԻ

Ամենից բարդ քայլը ձիունն է: Այն կատարվում է այսպես՝ հաշվեք երկու քայլ դեպի աջ կամ դեպի ձախ, վերև կամ ներքև և այնուհետև մի դաշտ նույնին ուղղահայաց:




ԱՌԱՋԱԴՐԱՆՔ: Խաղատախտակի վրա տեղադրեք հետևյալ դիրքը. սպիտակներ՝ Աd1, Նg3, Ձe2, Ձf6 (4), սևեր՝ Աg8, Փh5, Ձf5, Ձg7(4):

Չորս ձիուց երկուսը անշարժ են: e2 ձին տեղից շարժվել չի կարող h5 փղի պատճառով, g7 ձին՝ g3 նավակի պատճառով: Նրանք պարտավոր են պաշտպանել իրենց արքաներին: f5 ձին կարող է գնալ հետևյալ դաշտերից մեկի վրա՝ e7, d6, d4, e3, g3 (նավակը վերցվում է), h4, h6: Գտե՛ք f6 ձիու քայլը

քայլերը։ Ուշադրություն դարձրեք, որ ներկա դեպքում արքան գտնվում է շախի տակ։

Ձին միակ ֆիգուրն է, որն իրավունք ունի թռչել թե իր և թե՛ հակառակորդի ֆիգուրների վրայից։

Ո՞ՐՆ Է ՍԱԿԱՅՆ ՈՒԺԵՂԱԳՈՒՅՆ ՖԻԳՈՒՐԸ։ Այժմ երբ մենք ծանոթացանք ֆիգուրների քայլերի հետ, մեզ անհրաժեշտ է իմանալ, թե ինչով է որոշվում շախմատային ֆիգուրների արժեքը՝ նրանց համեմատական արժողությունը։ Շախմատային ֆիգուրների արժեքը որոշվում է նրանց հարվածելու ընդունակությամբ։

Դա գիտենալուց հետո արդեն հեշտ է որոշել, որ առավել ուժեղ ֆիգուրը թագուհին է, որը տախտակի կենտրոնից կարող է 27 տարբեր դաշտ գնալ։ Նավակը տախտակի կենտրոնից ունի 14 դաշտ, փիղը՝ 13, ձին՝ 8։

Այժմ կատարենք այսպիսի փորձ. թագուհին դրե՛ք տախտակի անկյունային դաշտերից մեկի վրա։ Հաշվեք, թե նա քանի դաշտի վրա կարող է գնալ։ Դուք կտեսնեք, որ նրա հարված հասցնելու ընդունակությունը ավելի պակաս է, քան տախտակի կենտրոնում։ Այդ նույն դիրքում փիղը կարող է գնալ միայն 7 դաշտի վրա, իսկ անկյունային դաշտից միայն 2 քայլ ունի։ Նրա մարտունակությունը տախտակի անկյունում 4 անգամ ցածր է, քան տախտակի կենտրոնում։ Արքան, որը կենտրոնում 8 հնարավոր քայլ ունի, տախտակի եզրում զգալիորեն կորցնում է իր շարժունակությունը և անկյունային դաշտերում իջնում է մինչև նվազագույնի՝ 3 քայլ։

Այս հանգամանքը չպետք է մոռանալ, որովհետև շախմատային ստրատեգիայի կարևորագույն դրույթներից մեկն է։

Շախմատային ֆիգուրների ուժը, իբրև կանոն, բարձրանում է խաղատախտակի կենտրոնում։

## ԶԻՆՎՈՐ

Շախմատի գործող անձերից մնացել է մեկը՝ զինվորը։ Զինվորը շարժվում է միշտ առաջ, հակառակորդի ճամբարի ուղղությամբ՝ մեկ դաշտ։ Բացառություն է կազմում զինվորի քայլը սկզբնական դիրքում, երբ խաղացողի ընտրությամբ այն կարող է առաջ շարժվել մեկ կամ միանգամից երկու դաշտ։ Զինվորով վերցնելը տարբերվում է քայլից։ Եթե նա քայլում է առաջ, ապա վերցնում է շեղ գծով։




Այստեղ սպիտակ զինվորը կարող է գնալ e5 կամ վերցնել f5 զինվորը, որն իր քայլի դեպքում ընտրության հնարավորություն ունի. կարող է առաջ գնալ f4 կամ՝ վերցնել e4։

Զինվորը մի հետաքրքրական առանձնահատկություն ունի։ Դրա հետ ծանոթանալու համար դասավորեցեք հետևյալ դիրքը. սպիտակներ՝ զ.e2(1), սևեր՝ զ.f4(1)։ Այս իրադրության մեջ սպիտակ զինվորը կարող է ընտրություն կատարել. շարժվել առաջ մեկ կամ երկու վանդակ։ Եթե այն առաջ շարժենք մեկ վանդակ և խաղանք e3, սևերը կարող են իրենց հաջորդ քայլում վերցնել նրան։ Իսկ ի՞նչ կլինի, եթե օգտվի իր իրավունքից և առաջ գնա միանգամից 2 դաշտ՝ e4, «սլանալով» հակառակորդի զինվորի կողքից։ Այդ դեպքում ևս սև զինվորը կարող է նրան վերցնել, այսինքն՝ հանել տախտակից և գրավել e3 դաշտը։ Այդպես վերցնելը կոչվում է «կողանցում»։ Եթե առաջին իսկ քայլում հակառակորդի զինվորի կողքից անցած զինվորը «կողանցում» չի վերցվում, ապա հետագայում այդ իրավունքից արդեն զրկվում է։ Տվյալ դեպքում, եթե e4 քայլից հետո սևերը նրան չվերցնեն, ապա զինվորը կմնա e4-ի վրա։

Շարժվելով առաջ, զինվորը, բնական է, որ կհասնի վերջին հորիզոնականին։ Այս դեպքում իր «ջանքերի» համար իբրև պարգև նա «վերածնվում է»՝ նոր պատվավոր կյանքի համար. նա կարող է փոխարկվել ֆիգուրի՝ թագուհու, նավակի, փղի կամ ձիու, ըստ խաղացողի ընտրության։ Այսպիսով խաղատախտակի վրա տեսականորեն կարելի է ունենալ մի քանի թագուհի, մի քանի նավակ և այլն։

Բայց միշտ չպետք է հրապուրվել զինվորը ուժեղագույն ֆիգուրի փոխարկելով։

Սպիտակներ՝ Աh2, Թe8, Նg2, Նh1, Փg1, զ.h3 (6), սևեր՝ Աa1, զf2(2)։ Այս դիրքում սևերի պարտությունը անխուսափելի է թվում, չնայած քայլը նրանցն է և սևերը կարող են զինվորը փոխարկել թագուհով։ Այդ դեպքում սպիտակների խոշոր նյութական գերակշռությունը կհասցներ հաղթանակի։ Սևերին փրկում է զինվորի՝ ցանկացած ֆիգուրի փոխվելու հատկությունը։ Նրանք խաղում են f1Ձx. մատ հայտարարելով սպիտակ արքային։

Սակայն ի՞նչ արժեն ֆիգուրները. սովորաբար իբրև շախմատային ֆիգուրների ուժի միավոր ընդունված է զինվորը։ Այսպիսով մոտավոր հաշվարկներով ֆիգուրներն արժեն.

| | | | |
|---|---|---|---|
| Զինվորը՝ | 1 | Նավակը՝ | 4 |
| Ձին՝ | 3 | Թագուհին՝ | 8 |
| Փիղը՝ | 3 | | |

Իսկ որքա՞ն է գնահատվում արքան. նրա ուժը ճշգրիտ որոշման չի ենթարկվում. այն ամբողջապես կախված է խաղատախտակի դրությունից։ Չէ՞ որ խաղի նպատակն է՝ մատ արքային։

Տ. Պետրոսյան



# ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ, ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՎՍՏԱՀՈՒԹՅԱՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Չորս աղջիկ և քսանչորս տղա են ութերորդ դասարանում, բայց տղաները աղջիկներին հարգում, լսում են, որովհետև աղջիկները կարգապահ ու լուրջ են, լավ են սովորում և թույլ չեն տալիս իրենց վարկաբեկող արարքներ: Այդ դասարանում կար մի այդպիսի աղջիկ: Նա փնթի էր, թափթփված և ծույլիկ. չէր լվացվում, դասի էր նստում մազերը գզգզված, և տղաներն էլ նրան ծաղրում էին, ձեռ առնում: Մենք այստեղ նրա անունը չենք տալիս, բայց թող ինքը զգա, թե դա որքան է վատ:

Հիմա այդ դասարանում այդպիսի աղջիկներ չկան: Եվ դասղեկուհի Թամար Մարկոսյանը իր սաներին համարում է քսանութ եղբայր ու քույր: Արդեն ութերորդ տարին է, ինչ ընկեր Մարկոսյանը գիտե իր սաներին. իր աչքի առջև մեծացել են, աճել:

Պատահում է՝ հավաքվում են նրանք ամբողջ դասարանով իրենց դասղեկուհու շուրջը, դասարանում, ննջարանում կամ թեկուզ ճաշարանում և մեկը ասում է. «Հիշո՞ւմ եք, ընկե՛ր Մարկոսյան, թե ինչպես միասին գնացինք թանգարան», «հիշո՞ւմ եք, ընկե՛ր Մարկոսյան, թե ինչպես Գևորգյան Էդիկը «շ»-ն արտասանում էր «ս», «հիշո՞ւմ եք, թե ինչպես Քանաքեռի գիշերօթիկ դպրոցի սաների հետ հանդիպեցինք»: Ընկեր Մարկոսյանը նույնպես հիշում է Քանաքեռի գիշերօթիկ դպրոցի նույն դասարանցիների հետ սաները նամակագրությամբ կապված էին: Հետո քանաքեռցիները իրենց հյուր կանչեցին: Գնացին ավտոմեքենաներով, նվագով ու երգով: Նրանց դիմավորեցին ջահերով, և եղավ ցնծագին հանդես: Ապա քանաքեռցի սաները հյուրերին ծանոթացրին իրենց դպրոցին, աշխատանքներին և վերջում միասին հավաք ունեցան, որը նվիրված էր Հայաստանում սովետական կարգերի հաստատման քառասնամյակին: Երեխաները երգեցին, պարեցին, պատմեցին, և բարեկամության խարույկը մինչև ուշ գիշեր բոցկլտաց: Դա երեք տարի առաջ էր, դեռևս հինգերորդ դասարանում:



Այդպես համատեղ ուսման մեջ, աշխատանքում և հանգստում, դասարանում, ճաշարանում, արհեստանոցում և ննջարանում նրանք ճանաչել են իրար, և դաստիարակն ճանաչել է նրանց:

Ավարտվում են դասերը, և ճաշարան գնալիս սաները հանդիպում են դաստիարակչուհուն: Հակոբյան Գրիշան խուսափում է աչքերին նայելուց, այդ նկատում է դաստիարակչուհին, հավանաբար ռուսաց լեզվի գրավորից նորից «երկուս» է ստացել: Սարդարյան Ռաֆիկը անհանգիստ է, ջղային, մաթեմատիկայի դասին երևի դարձյալ ինչ-որ անախորժություն է եղել: Բայց ընկեր Մարկոսյանը նրանց ոչինչ չի հարցնում. նրանք իրենք, եթե ոչ ճաշի ժամանակ, ապա հետո՝ դպրոցի միջանցքում կամ բակում, կմոտենան և կասեն. «Ընկե՛ր Մարկոսյան, այսօր ռուսաց լեզվի գրավորից «երկուս» եմ ստացել» և կամ՝ «Ընկե՛ր Մարկոսյան, երեկ ես հանրահաշվից տնային առաջադրանքը չէի կատարել...»

Ընկեր Մարկոսյանը հիշում է մի դեպք. նախանցյալ տարի էր, վեցերորդ դասարանում: Դպրոցի նախկին դիրեկտոր Մինասյանը ուսուցչանոցում նրան հանդիպելով ասաց. «Ընկե՛ր Մարկոսյան, նկատե՞լ եք, որ ձեր սաները դասարանի հատակը կեղտոտ են պահում, դուք հետևեք և պահանջեցեք, որպեսզի մաքրեն»: Մի ժամ անց, ընկեր Մարկոսյանը եկավ դասարան, աշակերտները լուռ նստած էին իրենց տեղերում, կարծես ոչինչ չէր եղել, իսկ դասարանի հա-

տակը մաքուր փայլում էր: Կարծեք աննշան դեպք է: Բայց ահա. թե ինչպես է բացատրում այդ դեպքը ընկեր Մարկոսյանը.

— Նրանք գիտեն, որ դիրեկտորը ինձ նկատողություն արած կլինի և դրա համար ես վշտացած կլինեմ: Եվ որոշել էին ուրախացնել ինձ: Ես, իսկապես, շատ ուրախացա, տեսնելով հատակը մաքուր: Չէ՞ որ նրանք կարող էին նաև անտարբեր սպասել... Ուրեմն սաների համար միևնույնը չէ, ուրեմն նրանք անհանգստանում, մտահոգվում են:

Եվ ամենակարևորը՝ վստահությունը:

— Եթե գիտենաք,— ասում է ընկեր Մարկոսյանը,— թե այդ վստահությունը որքան է դյուրացնում իմ աշխատանքը և նրանց ուսուցումը. այն, որ ես հավատում և վստահում եմ նրանց, նրանք էլ հավատում և վստահում են ինձ:

Մոտենում էին տարեվերջի քննությունները: Ընկեր Մարկոսյանը մտահոգվեց ետ մնացող սաների առաջադիմությամբ. մտածեց և դասարանը բաժանեց թույլ ու լավ սովորող աշակերտներից կազմված զույգերի: Այսպես՝ Միքայելյան Սիլվան պարապում էր Սարդարյան Ռաֆիկի հետ, Ռաֆիկը ընդունակ տղա է, բայց ծույլ է, իսկ Սիլվան պահանջկոտ է, կարող է նրան ստիպել: Գևորգյան Սերգեյը օգնում է Սահակյան Վարդանին:

Եվ ի՞նչ. աշակերտները իրենք հաշվետու չեն լինում դաստիարակչուհուն, այլ իրենք անց են կացնում այսպես կոչված ինքնաստուգում. յուրաքանչյուր օգնող աշակերտ ստուգում է, թե



իր դասընկերն ինչպես է կատարում հանձնարարությունները և առաջադրանքները, ինչպես է պատրաստվում հաջորդ օրվա դասերին:

Հիմա ընկեր Մարկոսյանը շատ աշակերտների թույլ է տալիս դասերը պատրաստել դպրոցի խաղաղ անկյուններում՝ ազատ դասարաններում, գրադարանում, հավատացած լինելով, որ նրանք երբեք չեն չարաշա-



հի իր վստահությունը և ժամանակը իզուր չեն անցկացնի: Եվ երբեք չի սխալվում: Նա Հակոբյան Գրիշային պարտավորեցնում է ամեն կիրակի տանը կատարել ռուսերենից արտագրություններ, լուծել մաթեմատիկական խնդիրներ, վստահ լինելով, որ Գրիշան չի թերանա, իսկ Գրիգորյան Էդիկին հանձնարարում է օգնել Մինասյան Ռոբերտին, համոզված լինելով, որ Էդիկը այդ առաջադրանքը անպայման կկատարի:

Ճաշարանից դուրս են գալիս ութերորդ դասարանցիները, նրանցից անբաժան է դաստիարակչուհին: Նրանք աշխույժ աղմըկում են, ծիծաղում, զրուցում: Մի երկու տասնյակ րոպե անց, ընկեր Մարկոսյանը կմտնի դասարան և կտեսնի նրանց աշակերտական նստարաններին լուռ և ուշադիր նստած: Նրանք ոտքի կկանգնեն, կնստեն, և ութերորդ դասարանում կսկսվի առաջին ժամը, այն ժամը, երբ նրանցից յուրաքանչյուրը տքնում, ջանում է, որպեսզի վաղը պատասխանի վստահ, մտածված, սպառիչ: «Մինչև քննությունները հաշված օրեր են մնացել».— մտածում է ընկեր Մարկոսյանը: Արդեն երկու ամիս է, ինչ նա դպրոցի ուսմասվար ընկեր Ռուստամջյանին ներկայացրել է իր դասարանի ուսման առաջադիմության ընդհանուր ցուցակը, ուր նշված էին ետ մնացող աշակերտները և այն առարկաները, որոնցից այդ աշակերտները «կաղում էին»: Նշված էին կարմիր մատիտով, որպեսզի դասատուները առանձնահատուկ ուշադրություն դարձնեին: Այնուհետև ընկեր Մարկոսյանը պարբերաբար ներկայացնում էր այդպիսի ցուցակներ, զրուցում էր դասատուների, ծնողների հետ: Ուսմասվարին ներկայացված ամեն մի հաջորդ ցուցակում թույլերը ավելի պակասում էին, և ահա քննություններին դասարանը մոտենում է անհամեմատ ավելի պատրաստված: Այդ քննությունները, մտածում է ընկեր Մարկոսյանը, կլինեն ոչ միայն անցած տարիներում իր սաների ձեռք բերած գիտելիքների, այլև այդ տարիներում նրանց միջև, նրանց և իր միջև ստեղծված համերաշխության, ընկերության և վստահության քննություններ: Քսանութ եղբայրներ ու քույրեր են նրանք. Երևանի № 2 գիշերօթիկ դպրոցի ութերորդ դասարանի սաները, համերաշխ մի ընտանիք, և ընկեր Մարկոսյանը վստահ է, որ իր սաները պատվով կհանձնեն այդ քննությունները:

*ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ*

*Լուսանկարները՝*

*ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ*






Մի ծաղիկ է գարնանածին,
Կհանդիպեք սարի լանջին.
Ունի կանաչ, սիրուն տերև,
Կարմիր պսակ՝ ինչպես արև.

Սև պուտեր կան թերթի վրա.
Թիթեռնիկն է հյուրը նրա։

ՄԿՐՏՉՅԱՆ ՌՈՒԶԱՆ.

(Երևանի Չարենցի անվան դպրոցի աշակերտուհի)

***Մեր պատանի ստեղծագործողները***

## ԱՇՈՒՆ

Տե՛ս, ինչ լա՜վն ես.
Ա՛յ աշուն,
Ոսկեհեր ես
Ու նախշուն։
Մրգառատ ես
Ու խնդուն,
Հուր ես, բույր ես
Մեր հանդում։

ԼԻԼԻԹ ՊԵՏՐՈՍՅԱՆ

(Արտաշատ, Կանաչուտի 8-ամյա դպրոց)




Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԻՅԱՆԻ

## Լ Ի Պ Ո Ն

*Ցուրտ ձմեռ էր։ Արձակուրդին գնացել էի գյուղ՝ տատիկիս տեսնելու։ Այնտեղ ամեն ինչ նոր էր ու հետաքրքրական ինձ համար։*

*Մի անգամ տատիկս Լիպոյին ասաց.*

*— Լիպո՛ ջան, հորթը ծարավ է, գնա՛ աղբյուրը հորթի և տան համար ջուր բեր։*

*Մենք վերցրինք դույլը և միասին գնացինք ջրի։ Լիպոն աղբյուրի փայտյա նավից կիսով չափ լցրեց դույլը, ապա այն դնելով ծորակի տակ՝ լրացրեց պակասը։*

*Ես զարմացած հարցրի.*

*— Այդ ի՞նչ ես անում, Լիպո՛։*

*Լիպոն հանգիստ նայեց ինձ ու ասաց.*

*— Չես տեսնո՞ւմ, հորթի և տանը օգտագործելու համար ջուր եմ լցնում։*

*— Ապա ինչու՞ կեսը նավից լցրիր, իսկ կեսը՝ ծորակից։*

*Լիպոն ծիծաղեց իմ «միամտության» վրա և ասաց.*

*— Այս ցրտին ո՞վ է երկու անգամ աղբյուր եկողը... Թող տատիկը ինքը բաժանի՝ ծորակինը երեսից վերցնի տան համար, իսկ տակինը կըտանք հորթին։*

*Ես այլևս ոչինչ չասացի և իմ մտքում ծիծաղեցի նրա միամտության վրա։*

ԼՅՈՎԱ ԲԵԿՉՅԱՆ

(Կիրովականի № 6 դպրոցի աշակերտ)




․Մարոյենց այգում մի մեծ խնձորենի կա, որը շատ մոտ է ցանկապատին։ Հենց այդ խնձորենու տակով անցնում է անտառ տանող արահետը։ Եթե գնաս արահետով, կանգնես ծառի տակ ու ձեռքդ մեկնես, կարող ես ուզածիդ չափ խնձոր քաղել։

Մարոն խնձոր շատ է սիրում, սակայն տատիկը չի թողնում խնձոր պոկել՝ մինչև հասնելը։ Բայց գյուղի չարաճճի տղաները միշտ էլ բարձրանում են ցանկապատին և խնձոր քաղում։

Մի անգամ Մարոյի տատիկը տեսնում է, որ արահետով մի խումբ տղաներ են գնում։ Նա ուղարկում է Մարոյին, որ սա չթողնի խնձոր քաղեն։ Մոտենալով խնձորենուն, Մարոն տեսնում է, որ տղաներից մեկը ելել է ցանկապատի վրա և խնձոր է քաղում, իսկ մյուսները հեռու կանգնած հսկում են։ Մարոն ճանաչում է. խնձոր քաղողը Հուսիկն է։ Հուսիկը չի նկատում Մարոյին։ Նրա սև, գանգուր մազերի մեջ տերևներ են լցվել, ծառի ճյուղը մի փոքր չանգռել է երեսը, բայց նա ոչինչ չի զգում։ Մարոն նայում է և տեսնում, թե ինչ ճարպկությամբ է նա խնձոր քաղում։ Մարոն լուռ հետևում է նրան և քիչ հետո կամացուկ շշնջում է.

— Հուսի՜կ...

Հուսիկն արագ շուռ է գալիս և, տեսնելով Մարոյին, սաստիկ շփոթվում է։

Իսկ Մարոն շշուկով ասում է.

— Հուսի՛կ, մի հատ էլ ինձ համար պոկիր, հա՞...

ԷՍԹԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

(Նոյեմբերյան շրջան, գյուղ Բաղանիս)

# ՄԻԱՄԻՏ ԷՇԸ

Էշն ու գոմեշը գործատեղից տուն էին վերադառնում։ Հանկարծ նրանց առջև դուրս է գալիս գայլը և ասում.

— Բարի երեկո՛ ձեզ, իմ բարեկամնե՛ր. ինչպես տեսնում եմ, հոգնած ու սոված եք, եկեք ձեզ տանեմ անտառի բացատը, այնտեղ շատ հյութալի և համեղ խոտ կա։

— Լավ է ասում գայլը, եղբա՛յր գոմեշ. արի գնանք կուշտ ուտենք, նոր վերադառնանք տուն, ով գիտե, գուցե այսօր էլ մեր տերը երեկվա պես դարմանից բացի ուրիշ ոչինչ չտա,––ասում է էշը։



— Ո՛չ, ես չեմ գա, ես չեմ հավատում գայլի բարեկամությանը, —ասում է գոմեշն ու վերադառնում է տուն։

Իսկ էշը գայլի ուղեկցությամբ գնում է անտառ։

Անցել են օրեր, ամիսներ, բայց էշը անտառից դեռ տուն չի վերադարձել...

ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ

(Երևանի № 82 դպրոցի աշակերտուհի

# ԻՄ ՀԱՐԱԶԱՏ ԳՅՈՒՂ

Իմ հարազատ գյուղ, թե գնամ հեռու
Եվ շքեղ ու պերճ քաղաքներ հասնեմ,
Դարձյալ քեզ երբեք չեմ մոռանալու,
Քեզ համար ես բյուր երգեր կհյուսեմ։

Եվ որքան էլ որ կյանքում բարձրանամ,
Նվաճեմ փառքի գագաթներ վսեմ,
Կարոտած սրտով կրկին ետ կգամ,
Քեզ համար նոր-նոր երգեր կհյուսեմ։

ԺԱՆԻԲԵԿ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

(Լենինականի № 5 գիշերօթիկ դպրոցի աշակերտ)

## ԲԱՌԱՇՂԹԱ „Կ" ՏԱՌՈՎ

1. Ֆրանսիական զորավար, որը 1919 թ. իր զորքով հարձակվեց Ռուսաստանի վրա: 2. Ճարպիկ կենդանի: 3. Քաղաք՝ Կասպից ծովի ափին: 4. Ձկան տեսակ: 5. Հիվանդություն, որից չի կարող խուսափել ոչ մի մարդ: 6. Քաղաք՝ Ամուր գետի ափին: 7. Քաղաք՝ Ենիսեյ գետի ափին: 8. Թխվածքի տեսակ: 9. Մթնոլորտային երևույթ: 10. Ոգելից խմիչք: 11. Թռչուն: 12. Հացազգիների ընտանիքին պատկանող բույս: 13. Անգլիացի նշանավոր ծովագնաց: 14. Շիրվանզադեի գործերից: 15. Շևչենկոյի բանաստեղծություններից: 16. Թռչուն:

Բոլոր բառերը սկսվում և վերջանում են «Կ» տառով:

*Կազմեց՝ ՌՈԲԵՐՏ ԲԱՐՍԵՂՅԱՆ (Ղափան)*




## ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

**Հորիզոնական.** 1. Լիճ՝ Աֆրիկայում: 2. Ամառվա ամիս: 3. Մշակված կաշի, որը հնում օգտագործվել է որպես գրելու թուղթ: 4. Քաղաք՝ Գերմանիայում: 5. «Դոն Կիխոտ» երգիծական վեպի հեղինակը: 6. Հրաբխային ծագում ունեցող կարծր քար: 7. Ժողովրդական տնտեսության տեսակ: 8. Քաղաք՝ Հունաստանում: 9. Քաղաք՝ Իրանում: 10. 4—5 հազար տարի ապրող արևադարձային ծառ: 11. Կ. Չապեկի հերոսներից: 12. Քաղաք՝ Իտալիայում: 13. Արկտիկան ուսումնասիրող անվանի բևեռագետ և ճանապարհորդ: 14. Անափ ծով: 15. Գետ՝ Հայաստանում: 16. Մոլորակ: 17. Թռչուն: 18. Լիճ, որի սառույցների վրա տեղի ունեցավ մեծ ճակատամարտ: 19. 5-րդ դարի հայ նշանավոր գործիչ (անունը): 20. Հայկական լեռ: 21. Երաժշտական խոշոր ստեղծագործություն: 22. Կենդանի, որն ապրել է քարե դարում: 23. Գետ՝ Եվրոպայում: 24. Քաղաք, որի մասին գրել է Հոմերոսը: 25. Արագավազ թռչուն: 26. Անգլիական մեծ գրող:

Հորիզոնական վանդակները ճիշտ լրացնելու դեպքում, ուղղահայաց վանդակներից երկուսում դուք կկարդաք մի կոմպոզիտորի և մի գրողի անուն. ինչ՞վ է նշանավոր կոմպոզիտորը և ինչո՞վ՝ գրողը:




*Կազմեց՝ ՌԱՖԻԿ ՆԵՐՍԻՍՅԱՆ (Լենինական, Տերյանի անվան դպրոցի աշակերտ)*

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ. 1. Հայրենական մեծ պատերազմի հերոսուհի: 2. Հերոս պիոներ: 3. Հայ լեգենդար ռևոլյուցիոներ: 4. Սովետական Միության կրկնակի հերոս, օդաչու: 6. Զինվոր, որը Խաղաղ օվկիանոսում 49 օր պայքարեց բնության տարերքի դեմ: 7. Կապիտան, որը Հայրենական մեծ պատերազմի ժամանակ իր վառվող ինքնաթիռով ոչնչացրեց թշնամու տանկերի շարասյունը: 9. Գյուղացիական պատերազմի առաջնորդ, որը հանդես եկավ Պյոտր 3-րդ կայսրի անվան տակ: 10. Բրեստի պաշտպանության ղեկավարներից: 11. «Երիտասարդ Գվարդիա» ընդհատակյա կազմակերպության հերոսներից: 16. Հերոսուհի, որը 1429 թվականին Օռլեանը ազատագրեց անգլիացիներից:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ. 5. Հերոս պիոներ, որին սպանեցին կուլակները: 8. Հայրենական պատերազմի հայ հերոս: 11. Քաղղեկ, որը ղեկավարում էր 28 պանֆիլովականների սխրագործությունները Մոսկվայի մոտ: 12. Ռուս հռչակավոր զորավար, որը ղեկավարում էր Բորոդինոյի ճակատամարտը: 13. Քաղաքացիական պատերազմի հերոս, որը սպանվեց Ուրալ գետում: 14. Քաղաքացիական պատերազմի հերոս, որը կռվում էր գերմանացիների դեմ: 15. Պատմական անձնավորություն, որը 1581 թվականին Սիբիրի գրավման ժամանակ սպանվեց Իրտիշում: 16. Ռուսական իշխան, որը 1380 թվականին Կուլիկովյան դաշտում ջախջախեց թաթարներին: 17. 17-րդ դարի գյուղացիական պատերազմի առաջնորդ: 18. Քաղաքացիական պատերազմի հերոս, որին ճապոնացիները վառեցին շոգեքարշի հնոցում: 19. Հայ նշանավոր զորավար, որը սպանվեց Ավարայրի դաշտում (անունը):



## ԽԱՉԲԱՌ «ՀԵՐՈՍՆԵՐ»

Կազմեց՝ ԳԱԳԻԿ ՀԱՅՐՈՒՄՅԱՆ
(Գորիսի Վերիշենի 8-ամյա դպրոց)

## ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

1. Գետ, որի ափին տեղի է ունեցել Ավարայրի ճակատամարտը: 2. Քաղաք՝ Սև ծովի ափին: 3. Հայ մեծ վիպասան: 4. Գետ՝ Անդրկովկասում: 5. Լեռ՝ պատմական Հայաստանում: 6. Լեհ կոմպոզիտոր: 7. Գետ՝ Ասիայում: 8. Գետ՝ Արևելյան Եվրոպայում: 9. Ռուս գրող: 10. 5-րդ դարի պատմիչ: 11. Շիրվանզադեի ստեղծագործություններից: 12. Պետություն՝ Աֆրիկայում: 13. Արտաշատի շրջանի գյուղերից:

Ճիշտ լրացնելուց հետո շրջանագծերից մեկում կկարդաք ուկրաինացի մեծ բանաստեղծի ու նկարչի անունը և ազգանունը:



Առաջարկ՝ ԲՈՐԻՍ ՀԱԽՆԱԶԱՐՅԱՆԻ (Արտաշատի շրջան, Այգեստանի գյուղի միջն. դպրոցի աշակերտ)




## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ...

1—12 թվերը տեղադրել այնպես, որ երկու մեծ եռանկյունիների ամեն մի կողմի, ինչպես նաև շրջանագծի շրջանակներում եղած թվերի գումարը կազմի 26:

Առաջարկ՝

ՆԻՆԱ ԿՈՒՆԱԿՈՎՍԿԱՅԱՅԻ

(Դորիս, Չորաշենի գյուղ)

# Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 2

«ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ» - Հորիզոնական 1.—Ամերիկա։ 6. Պարանա։ 7. Մոսկվա։ 10. Կոնգո։ 12. Կրետե։ 14. Կապրի։ 15. Ատլանտյան։ 18. Լուսոն։ 19. Դանիա։ 20. Արիկա։ 22. Արարատ։ 23. Ապարան։ 24. Մադեյրա։

Ուղղահայաց—2. Մինսկ։ 3. Կիտոտ։ 4. Նանսեն։ 5. Եվրոպա։ 8. Ինդոնեզիա։ 9. Ուկայալի։ 11. Միչիգան։ 13. Էլտոն։ 14. Կլայդ։ 16. Ուսսուրի։ 17. Անտալատ։ 20. Անապա։ 21. Ալպեր։

«ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ»— 1. Անանիա։ 2. Շիրակացի։ 3. Կիրովական։ 4. Արարատ։ 5. Իշխանասար։ 6. Փանիկ։ 7. Արթիկ։ 8. Անիպեմզա։ 9. Աղստև։ 10. Կամո։ 11. Արամազդ։ 12. Արգիճի։ 13. Անի։ 14. Բայազետ։ 15. Արփա։ 16. Շաքիի։ 17. Վեդի։ 18. Արգնի։

«ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ» - 1. Դեպի արևելք: 2. Հյուսիսից-հարավ։ 3. Հյուսիսային բևեռի շրջանում։ 4. Հարավային 58 — 60° լայնություններում և հյուսիսային բևեռի շուրջն ընկած լայնություններում։ 5. Հասարակածում։ 6. Հարավային լայնության մոտավորապես 40° լայնության և արևմտյան 45° երկայնության հատման կետում։ 7. Իմանում ենք զուգահեռական միջօրեականների միջև ընկած հատվածը աստիճաններով և սանտիմետրերով։ Մասշտաբի միջոցով որոշում ենք այդ հատվածի իրական երկարությունը, այն բաժանում աստիճանների վրա և իմանում ենք աստիճանի երկայնությունը։ 8. Արևադարձների միջև ընկած շրջանում՝ տարեկան երկու անգամ տեղական ժամանակով ժամը 12-ին, իսկ արևադարձներում՝ մեկ անգամ։ Կոնկրետ՝ հյուսիսային արևադարձում՝ հունիսի 22-ին, ժամը՝ 12-ին։ 9. Հասարակածում։ 10. Հունիսի 22-ին՝ ամենակարճը, դեկտեմբերի 21-ին՝ ամենաերկարը։ 11. Բևեռային շրջագծերում (հարավային և հյուսիսային լայնությունների 66° 30°)։

ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

Ալբերտ Բաղդասարյանը, Համլետ Թալաթյանը (Երևան), Բաբկեն Սարգսյանը (Թալինի շրջան), Արտուշ Ղաթյանը (Արթիկ), Նինա Կոլեցյանը, Սվետլանա Ավագյանը (Աշտարակ), Ջեմմա և Անահիտ Թադևոսյանները (Սիսիան), Ֆելիքս Ֆյուրմեյյանը (Սուխումի), Օլյա Աղվանյանը (Ալավերդի), Լյովա Բեկչյանը, Ֆելիքս Մովսիսյանը (Կիրովական) և ուրիշներ։

Խմբագիր՝ ՍԱԴ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—96։

ՎՖ 07679։ Պատվեր՝ 681։ Տպաքանակ՝ 17 300։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 9/V 1964 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։

Գինը 20 կ.





ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



# ՎՈՅՆԻՉ

Անգլիացի կին գրող Էթել Լիլիան Վոյնիչի բնակարանը լեփ-լեցուն էր հարազատներով ու բարեկամներով: Արկղներից հանում էին ինչ-որ կինոժապավեն: Ի՞նչ էր կատարվում, մի՞թե քաղաքի բազմաթիվ կինոթատրոնները չէին բավարարում այդ մարդկանց, որ հիմա էլ իննսունմեկամյա գրողի բնակարանն էին վերածել կինոսրահի: 1955 թվականի այդ օրը սովորական օր չէր Վոյնիչի համար:

Նրա «Բոռ» վեպը 82 անգամ վերահրատարակվելուց և բազմաթիվ բեմահարթակներով անցնելուց հետո, Սովետական Միությունում երկրորդ անգամ էկրան բարձրացվեց: Եվ ահա, ֆիլմը փոքրածավալ կինոսարքավորումով նվեր էր ուղարկվել Նյու-Յորք, որտեղ այդ ժամանակ ապրում էր գրողը, որպեսզի նա հնարավորություն ունենա այդ նկարը դիտելու իր տանը:

Երբ սկսվեց ցուցադրումը, Լիլիան Վոյնիչը ինքն իրենից վերացած, հեգնական մի ժպիտ դեմքին, կարծես չէր նայում, այլ զգում էր, զգում իր ամբողջ էությամբ, և մտովի վերապրում իր ամբողջ կյանքը... Արթուրը նրան հիշեցրեց քաղաքական բազմաթիվ վտարանդիների, որոնց հետ Լիլիան մտերմացել էր Բեռլինի արքունական կոնսերվատորիան ավարտելուց հետո՝ տարբեր քաղաքներում կատարած իր շրջագայությունների ժամանակ: Հիշեց Պետերբուրգը... Ընդամենը քսաներեք տարեկան էր, երբ հանկարծ որոշեց գնալ այդ քաղաքը և, ինչպես ինքն էր այդ ժամանակ ասել, «գնում էր վտարանդիների պատմածները աչքով տեսնելու». Երկու տարուց ավել նա ապրեց Պետերբուրգում, ծանոթացավ ռուս առաջավոր մարդկանց հետ, որոնցից և սովորելով ռուսերենը, սկսեց զբաղվել ռուսական պոեզիայի ու բանահյուսության ուսումնասիրությամբ: Այստե՛ղ էր, որ նա անգլերենի ու դաշնամուրի դասեր էր տալիս հարուստների երեխաներին և ուտելիք տանում քաղաքական բանտարկյալներին: Այստեղ, իրեն շրջապատող հրաշալի մարդկանց շրջանում էր, որ ձևավորվեցին նրա դեմոկրատական հայացքները:

Այնուհետև նա վերադառնում է իր հայրենիքը՝ Լոնդոն, և ընդմիշտ կապվում դեմոկրատ գործիչների հետ:

Անցնում են տարիներ...

— Սիրելի՛ Էթել, դու գրելու հրաշալի շնորհք ունես, անպայման պետք է գրես,— հաճախ նրան ասում էր Ստեպնյակ Կրավչինսկին:

Եվ չնայած Կրավչինսկու անընդհատ հորդորներին, նա իր ուժերը սկզբում փորձեց թարգմանություններ կատարելով՝ անգլիացի ընթերցողներին մատուցելով ռուս նշանավոր գրողներ Ի. Ս. Տուրգենևի, Ֆ. Մ. Դոստոևսկու, Լ. Ն. Տոլստոյի գործերը: Թարգմանեց նաև «Ռուսական հումոր» ժողովածուն, «Շևչենկոյի լիրիկան» և շատ ուրիշ գրքեր:

Բայց նա մտովի ստեղծում էր իր սեփական գրքի հերոսի՝ Արթուրի կերպարը: Դրան մեծ չափով նպաստեց այն, որ նա ակտիվ մասնակցություն էր ունեցել իր լեհ՝ Սիբիրից փախած քաղաքական վտարանդի ամուսնու և նրա ընկերների հեղափոխական գործերին:

«Եվ մի օր էլ, երբ ես Փարիզում էի,— հետագայում պատմում էր Վոյնիչը,— Լուվրի թանգարանում իմ ուշադրությունը գերեց մի պատանու դիմանկար, որ վրձնել էր իտալացի մի նկարիչ: Ես երկա՜ր, շա՜տ երկար կանգնեցի այդ դիմանկարի առջև և իմ երևակայության հերոսին պատկերացրի հենց այդ պատանու դիմագծերով: Հիշում եմ, եկա տուն և սկսեցի գրել: Ահա բոլորը...»

«Բոռ» վեպը Լիլիան Վոյնիչի առաջին ինքնուրույն գործն էր: Այնուհետև նա գրեց ևս չորս վեպ՝ «Ջեկ Ռայմոնդ», «Օլիվիա Լատամ», «Բոռը արտաքսված», «Հանի՛ր կոշիկներդ», բայց դրանցից ոչ մեկը չի կարող համեմատվել «Բոռի» հետ: Այդ վեպը մեր պատանեկության ամենասիրած գրքերից է, համաշխարհային գրականության լավագույն գործերից մեկը, որը լույս է տեսել աշխարհի գրեթե բոլոր լեզուներով:

Էթել Լիլիան Վոյնիչը մեռավ 1960 թվականին, 96 տարեկան հասակում:

*ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

Ինդեքս 77806

# ԾԱՂԿԱԶԱՐԴ ՄԱՅԻՍ

Խոսք՝ ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆԻ

(տես էջ՝ 27)

Երաժշտություն՝ ԱԶԱՏ ՀԱԿՈԲՅԱՆԻ






















